Թիֆլիսի Հայոց Հրատարակչական Ընկերութիւն

№ 54

# ԽԱՆ–ՄԻՐԱՆ

ԱՒԱՆԴԱԿԱՆ ՄԻ ՊԱՏԿԵՐ ԹԱՀՄԱԶ-ՇԱՀԻ ՎԱՍ-
ՊՈՒՐԱԿԱՆԻ ԱՐՇԱՒԱՆՔԻՑ



Գրեց

Ս․ Է Յ Լ Ա Ն



Թ Ի Ֆ Լ Ի Ս

ՏՊԱՐԱՆ „ԱՐՕՐ“ Տ. ՆԱԶԱՐԵԱՆ

1892

*Ընկերութեան հետեւեալ հրատարակութիւնները վաճառւում են Ընկերութեան գրասենեակում՝ և Կենդրոնական գրավաճառանոցում.—*

---

| | Ռ. | Կ. |
|---|---|---|
| 1. Թուամազ մեղու, թարգմ. օր. Ն. Տէր-Մարկոսեան | — | 40 |
| 2. Կարմիր լապտեր, թարգ, օր. Ն. Տէր-Մարկոսեան | — | 50 |
| Նոյնը առանց կազմի. | — | 30 |
| 3. Թովմաս եղբօր տնակը, թարգ. օր. Ն. Տէր-Մարկոսեան | — | 60 |
| Նոյնը առանց կազմի | — | 45 |
| 4. Մանկական երգեր, Գամառ-Քաթիպա | — | 25 |
| Նոյնը առանց կազմի | — | 15 |
| 5. Մորեխ և նրան ջնջելու հնարները. Հ. Տէր-Բարսեղեանի | — | 10 |
| 6. Նեղ և խոնաւ բնակարանների մասին Հ. Առաքելեանի | — | 10 |
| 7. Սրբոյ Հօրն մերոյ Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց | — | 80 |
| 8. Փոքրիկ ձեռնարկ գործնական տընտեսութեան Մօրիս Բլօքի. փոխադր. Ս. Պալասանեանի | — | 50 |
| 9. Ռօբինզօնի պատմ. թարգմ. Գիւտ քհն. Աղանեանցի | — | 60 |
| 10. Գամառ-Քաթիպայի բանաս. կազ. | 1 | 20 |
| Նոյնը առանց կազմի. | — | 50 |
| 11. Ուխտաւորք. գործ Վիլհէլմ Հաուֆի | — | 75 |
| 12. Գառնուկ և Լուսատտիկ. վէպեր Քրիստափոր Շմիդտի. Թարգ. Նուարդ | — | 25 |
| 13. Սայաթ-Նովա. ազգային երգիչ | — | 5 |
| 14. Ծննդեան պատմութիւնը և Մայիսեան տօնը Ֆինլանդիայում | — | 10 |

Seylan

Khan-Miran awandakan mi...

Թիֆլիզի Հայոց Հրատարակչական Ընկերութիւն

№ 56

# ԽԱՆ—ՄԻՐԱՆ

(ԱՒԱՆԴԱԿԱՆ ՄԻ ՊԱՏԿԵՐ ԹԱՀՄԱԶ-ՇԱՀԻ ՎԱՍ-ՊՈՒՐԱԿԱՆԻ ԱՐՇԱՒԱՆՔԻՑ)

Գրեց

Ս Ե Յ Լ Ա Ն





Թ Ի Ֆ Լ Ի Ս

ՏՊԱՐԱՆ „ԱՐՕՐ“ Տ. ՆԱԶԱՐԵԱՆ

1892

# ԽԱՆ—ՄԻՐԱՆ

## Ա.

### *ԳԵՐԵԶՄԱՆՆԵՐԻ ՄՕՏ*

Չորս տարի առաջ՝ չեմ յիշում թէ՝ ամրան որ օրն էր...

Արևը տակաւին նոր է ծագում Վարագայ կրծքից, լերկ ու մերկ ապառաժներից. մի ահագին, ծիրանագեղ ցոլքերով օղակ հորի-զոնի ջինջ ու պայծառ փեշերը ներկելով, իջ-նում էր դէպի սարերի բարձունքը։

Գրգուռի բազմաճիւղ գլուխը, Նեմրութի, Ցիպանի, Առտօսի կոները արևի նորընծայ ճառագայթներով ողողուած, անդրադառնում էին Բզնունեաց ծովակի կապուտակ հայելւոյն մէջ, մերթ անջինջ, մերթ կոտրտուած, դող-դողում յետ էր խուսափում կոհակ առ կոհակ իբրև մի համեստ գեղանի, որ ինքն իսկ կար-

մրում է իւր չքնաղ դէմքն ու ժպիտը անապականութեան մէջ տեսնելիս...

Մենք Կտուց-Անապատն ենք։

Ինձ առաջնորդում է մի ծերունի աբեղայ, վանքի լուսարարը, 140 տարեկան Գրիգոր վարդապետը, կամ՝ ինչպէս անուանում էին նորան բարեկրօն միաբան եղբարք, *Յազկերտը*։ Այս մականունը տուել են նորան, որովհետև Յազկերտաբար վարուած է անգին յիշատակների հետ, առանց կանխամտածութեան ամենահին գրչագրեր և պատկերներ թաղելով ծովին խորքը։

Բարեմիտ ծերունին՝ մի ինչ որ աղօթք մրմռալով, տընքտնքալով ինձ վանքից հեռացրեց, տարաւ կղզու հարաւային կողմը, այն վաղեմի քարայր տաճարի առաջ, որ կոչւում է ս. Աստուածածին։

—Ահա՛ քո ուզածները,—վերջապէս ասաց աբեղան կանգնելով,—ահա այն երեք գերեզմանքը, որ ուզեցիր նոցա մօտ ծնրադրել, ո՛վ կրօնասէր և բարեպաշտ ոգի...

Խեղճ մարդ, նա կարծում էր, թէ կրօնական մի ինչ որ զգացում ստիպում է ինձ յարգել աննշան քարակոյտերը... Այնու ամենայնիւ՝ սիրտս յուզումից դողում էր. անդիմադրելի բնազդումով ծնրադրեցի։ Լուռ էի... ամփոփւում էր իմ մէջ մի տեսակ դառնութիւն,

մայրերս կարծես լեցուեցան։ Հրեղէն սլաքներ յանկարծ ցայտեցին աչքերէս, խռնուածութիւնից զգացի թէ՝ արտասուք էին նոքա։

Երևի վարդապետը իմ սգալի երևոյթը յարգելով, սկսեց մեղմիւ մրմնջել *հոգոցն հան-գուցելոց*...

—Սոքա են... հէ...—մրմռացի երկու րոպէ՝ յետոյ ոտի կանգնելով։

—Այո՛, որդեակ իմ,—ընդհատելով աղօթ-քը պատասխանեց ծերունին մի սովորական հառաչով,—սոքա են նոցա գերեզմանքը։

—Խեղճե՜ր, իրենց գործին արժանավայել գերեզմանաքար, արձանագիր անգամ չունին... մի մի փոքրիկ քարակոյտերի տակ հանգչում են հերոսական ցանկալի փառքով...

—Ինչի՞ պէտք են արձաններ... դատարկ բան... հոգիներն անմահ են...

—Այն ասացէք, ս. հայր,—միջամտեցի նո-րան հարցնելով,—սոցանից ո՞րն է *Խան-Միրան* սնուանածներդ...

—Այս վերևինը՝ Խան-Միրանն է, սա՝ Նա-զենիկ, իսկ սա՝ Նանէ։

—Խան-Միրան. սիրուն անուն ընտրած է արքայազունը։

—Բայց՝ արժէ, ինքն էլ սիրուն է եղել։ Միաբան եղբարք պատմում էին անշուշտ ծե-

րերից լսելով, թէ Շահն ու Նորա յաջորդներից շատեր թոյնով սպաննելից, քաղաքական վէճ ու կռիւ Սէֆեան ընտանիքի դէմ յարուցանելից յետոյ՝ գալիս է մեր անապատը, փռանց ինքզինք ներկայելու, իբրև պարզ մարդ, բնակւում է մի խեղճ խրճիթի մէջ, ապա շինում է հռչակաւոր Դիւաբնակ-խուցը, որ հաղորդակցում է ստորերկրեայ քարայրերի հետ։ Օրը մի քանի անգամ Խան-Միրան ծածկապէս կը գայ եղել Նազենիկի, Նանէի գերեզմանքը արտասուելով աղօթելու։ Այս մեծ մարդը մեռած ժամանակ միայն խոստվանում է իւր բոլոր արածները և խնդրում մարմինը իւր սիրած Նազենիկի մօտ թաղել...

—Ինձ հասկացուցէք, խնդրեմ, Խան-Միրան Թահմազպ-շահին սպաննելուց յետոյ, ի՞նչ ձևով իրագործում է իւր միւս յառաջադրութիւնները։

—Մեր լսածը սա է։ Շահին սպանում և իսկոյն Նորա հրովարտակով ներկայանում է իբրև փոխարքայ։ Այսինքն՝ Թագաւորը մեռնելիս ինք գրում է հրովարտակը, կնքում է որքունի կնիքով և դնում Նորա բազմոցի տակ, որ ապա գտնելով պարսիկ իշխաններ, Խան-Միրանի խնամակալ—փոխարքայութիւնն վաւերական են հռչակում։ Դրանից յետոյ հանում է Թա-

գաւառական զանազան թեկնածուներ, յեղափոխում Պարսկաստանը և այլն։

—Բայց հայը սուրբ, սոցա մասին լուռ է պատմութիւնը, ընդհանրապէս բոլոր պատմագրեր վկայում են թէ իւր մեծամեծներից թունաւորուած մեռաւ Թահմազ-Կուլի, միւնոյն բախտին ենթարկուած են և նորա յաջորդները...

—Պատմիչները ստոյգ են ասում, Խան-Միրան պարսից համար մինչև վերջը պարսիկ, մեզ համար միայն հայ էր և հայ մեռաւ։

—Ինչո՞ւ այդ ամենը լոյս չէք ընծայում...

—Չա՛րժէ գրել... այսպիսիներ շատ են եղել...

Մի սուր ակնարկով չափեցի կարճուկ, միակնի ծերունիին, որ իւր սպիտակ մօրուքը յարդարելով նայում էր գետին՝ խօսելով.

—Դո՛ւ, բարեկամ,—շարունակեց նա,— եթէ երթաս Գնունեաց սահմանը, այժմու Ատեռ գիւղը՝ ուր լի են ոչ միայն պատմական այլև անյիշատակ դարերի նշաններ, եկեղեցւոյ դրան վերայ պիտի գտնես մի 500 տարեկան արձանագիր այսպէս.—Վահրիճ և Զէլ խաթուն Արծրունի... անկան ի մե...խռոն... «Զէլ զբազումս սպան...» և այլն, որ ոչ մի իմաստ դուրս չի գալ, սակայն եթէ աւանդութեան մէջ որոնես՝ կը լսես թէ ինչե՛ր են արած իշխան-Վահրիճ և տիկին-Զէլ Արծրունի,

ըստ աւանդութեան Ամկայ Թագուհին...

—Ս. Հայր, միթէ դոքա արժէք չունին ձեզ մօտ...

—Ի՞նչ արժէք կարող են ունենալ, այդպիսի սնոտիքներով արդէն զարգացած է Հայ գիւղացին...

—Հապա ի՞նչն արժէք ունի...

—Նահատակաց պատմութիւնն։

—Լաւ... վերջապէս, թողնենք այդ ամենն։ Խան-Միրանի պատմութիւնը պատմեցիք ինձ, գերեզմանքը տեսայ, այժմ մնում է խանի ինքնագիր մագաղաթը տեսնել, որի մէջ նա պատմում է իւր կեանքի գլխաւոր կէտերը...

—Երթա՛նք վանք, պարոն, մագաղաթը ես եմ պահած իմ ուրիշ ձեռագիր մատեանների հետ...

—Անշուշտ թոյլ պիտի տաք օրինակելու...

—Անտարակո՛յս... որովհետև կրօնասէր էք, ձեր տրամադրութեան տակ պիտի դնեմ Վանուց թանգարանը... ես հակառակ եմ կրօնատեացներին...

Ժպիտով ընդունեցի պարզամիտ վարդապետի զովեստը։

Վերադարձանք վանք՝ ուր պիտի կարդայի Խան-Միրանի ինքնակենսագրութիւնն (խիստ համառօտ) և լսէի նորա աւանդական պատմութիւնն՝ այսօր քեզ ընծայելու, ազնիւ ընթերցող։

---

«Եւ գրկասուն պայազատունք
«Ըզ սփրելեաց պատմեն զքան,
«Թափին, Թանան դաւն արտասուք
«Ցիշելով զքանս Ասքանազեան...
«Իր զի երբեմն այր զօրավար
«Երկիր Հայոց հանէր ի վէգ
«Պարածածկեալ զլանջն ի յասպար
«Դէմ ոխերմաց տատանել տէգ...
«Այժմ ի հող ամենեքեան
«Եկայք ողբալ զվասպուրական...

Յով. վարդ. Վարազացի *)

Բ

## ՍԻՐԱՀԱՐՆԵՐԸ

Երեք ու կէս դար առաջ, զատկական կիրակիներից մէկին, մի գեղեցկադէմ, քաջ երիտասարդ, սպիտակ երիվարի վերայ նստած,

---

*) 1887—1888 թուերին Բաղէշում, կտաւագործ տիրացու Ղազար (Խպճօ) անուն անձի մօտ գտնելով մի ձեռագիր հին երգարան, որ հաւաքածոյ էր

գնում էր Վան քաղաքից դէպի հիւսիս, Ալուր կամ Այլուր գիւղը։

Նորա մթագնած ճակտի, կապտածիր աչերի, գունաթափ այլ գեղեցիկ դէմքի վերայ նայողը կարող էր կարդալ խոր վշտերի հետքեր։

Գլուխը ծածկած էր մի կոնաձև խոյրով, բոլորովին մետաքսաթել բանուած և պատատած, սև, ծայրերը ոսկեթել ապարօշով, որի մի դրօշը անփութօրէն իջնում էր լայն թիկունքով։ Խայտախարիւ տափատի (շալվար) ոսկեթել բանուած օձիքաւոր թիկնոցի վերայ

---

ԺԵ. ԺԶ. ԺԷ.-երորդ դարերի հայ-պօէտների ընտիր գրուածներին՝ գրեթէ բոլորը կրօնական, միայն Ցով. վար. Վարագացու գրած «Ողբ ի Վասպուրականն» օրինակեցի, որով պատկերանում էր Թահմասպի արշաւանքը, այն ժամանակի հայը, գաղափարը և այլն։ Այնչափ սիրուն, գողտրիկ թուեց ինձ այդ ողբ, որ մի քանի անգամ կարդալով, անգիր արի նորա մի քանի հատուածները։ Դժբախտաբար մի ծանր ճգնաժամի մէջ ստիպուեցայ վառել այդ գանձ։ Այժմ մեր մէջ բերած հատուածները նորանից են։ Հեղինակի մասին այսչափ միայն գիտեմք. ինք Վարագայ միաբան է եղել, արշաւանքին ականատես, երբ Էջմիածին է գնացել եպիսկոպոսանալու, կաթողիկոսի յորդորանօք գրել է այս չքնաղ ողբ։

Ծ. Հ.

հագած էր մի վերարկու՝ գրեթէ յար և նման արգի քահանայականին։ Ոտները կոխել էին խոշոր կարմիր կօշիկների մէջ, հազիւ ուրեմն ազդրերի ստորին մասերն երևում էին վերարկուի դրօշների տակով։ Խորասան-պարսիկ շալի մի ծանրագին գօտի՝ շրջագծելով նորա վայելուչ մէջքը՝ կիսովին թագչում էր թիկնոցի ետև, որի մէջ խրած էր մահիկաձև, ոսկիապատեան, ակնակուռ մի փոքրիկ դաշոյն։

Սպիտակ ձիու վերայ աւելի ընկած էր՝ քան նստած, սանձը թոյլ, իւր աչերը կիսասքող, յայտնի է թէ ձիու կամքին էր մնում գնալ տիրոջ ուզած տեղը... այնուամենայնիւ երիտասարդը մերթ ընդ մերթ ունակաբար խփում էր նորա կողերին՝ կարծես ստիպելու, որ սլանայ սալասմբակ։

Ոչ ոք չըկար ճանապարհին։ Նա միայն էր իւր ձիուն հետ։

Երկինք խառնուած սև ամպերով, ահագին մէտէօրական ժայռեր գլորում, սահում էին հորիզոնի մռայլ կրծքով, Վասպուրականի գարնան օրերի հաւատարիմ տիպը կրելով։

Փրփրակոծ ծովակի զայրացայտ որոտման հեռաւոր ձայնը, նորա անկայուն հեռանկարը, անհերքելի փաստեր էին օրուայ վատանալուն։ Ստուերներով ծրարուած ծովափունքը դալարի

օդակի նման գնում, խուսափում էին հեռաւոր հորիզոնի ծոցերին, ամպերին մէջ, որ կոհակ կոհակ ծրարւում էին Վասպուրականի հպարտ լերանց բարձունքը։

—Դէ, արապ,—մրմնջեց անցորդը յանկարծ ձիու սպիտակ բաշերը շոյելով,—աճապարէ՛ր, բարեկամ, Նա մեզ է սպասում...

Արապը ոգեւորուեց ու քայլեց քառասմբակ ականջները ցցելով և մի թեթև խրխնջալով, Հեծեալի վերարկուն սկսեց փափուալ ու ծածանել օդի դիմագրող հոսանքից։

Երիտասարդը մտածում էր ու մտածում։

—Այսպէ՛ս,—խօսում էր իւր հոգւոյն մէջ մի ձայն,—այսպէս ուրեմն... Թուրքերը մեր կալուածները գրաւեցին... Արծրունեաց արքայական տան վերջին բե՛կորն եմ ես... վերջին ծաղիկն եմ ես... ա՜հ, ի՜նչ ցաւալի ժամանակ, ոչ մի ազատորդի տեսնում ես շուրջդ, ոչ մի մարդ գտնում ներկայն դարմանել ուզող... սիրտդ լցւում է արիւնով...—սկսեց հառաչելով ձին խթել,—հոգիդ լալիս է անմխիթար կոտորածի, աւերածի, աճիւնի վրայ... ամեն կողնից գոյժ, ամեն կողմից բողոք ու ողբ, ամեն կողմից անլուր տրտունջ միայն... ոչ ո՛ք, ոչ ո՛ք ասում է՝ թօթափինք անարգ տաճկի լուծը. ոչ ո՛ք ասում է, գոնէ արեան

դաշտի մէջ թաղենք 'ողբալի ներկայն ու անլոյս ապագան հերոսական դրօշմով... Գործողի մելիքը, Ջհան Ամիրան, վսեմ հայր, եթէ միանար այն ժամանակ իմ պապին, եթէ ինք չ'առաջնորդէր թուրքերին, այժմ կանգուն կը մնար· Ամկայ թագաւորութիւնն, իմ փոքրիկ իշխանութիւնը... Շահ-Արմէն ոչ ևս է... խե՜ղճ, Վասպուրական... էհ, հեռացէք, հեռացէք, անիծեա՜լ ցաւեր, հեռացէք տխուր խոհեր, մի վայրկեան ինձ առանձին թողէք, խօսեմ նորա անշիջ յիշատակի հետ... ըստուերի հետ... հէք Նազենիկ, ափսոս, չեմ կարող թագուհի անել քեզ... հարիւր յիսուն տարիներ անցած են մեր թագաւորութեան ջնջուած օրից... այնուամենայնիւ հարստահարեալ ժողովուրդը ինձ տալով Շահ-Արմէն, Ամկայ թագաւոր տիտղոսը, ակնկառոյց սպասում է հրաշքների... ո՜հ, թող թագաւորը, գոնէ մի փոքրիկ նախարար լինէի, գէթ յիսուն արի մարդերով շրջապատուած... Նազենի՛կ, Նազենի՛կ, միայն դու պիտի փարատես իմ թախիծն ու սուգը... միայն դու պիտի մեղմես ցաւերի ուժգնութիւնը, պաշտելի՜ աղջիկ, կ'առնեմ քեզ ինձ հետ... կը գնա՜նք. կը գնանք, կը հեռանանք մեր դժոխացած հայրենիքից, օտար երկրի մէջ դու կը լինիս մայր և տան-տիրուհի,

իսկ ես հայր ու գործաւոր. գուցէ հայրենիքից հեռու մնալով չը տեսնեմ նորա արիւնահոս վէրքը... նորա սորկացած կղերը... կղե՜րը որ ամեն տեսակէտով արգելք է հանդիսանում իմ ձեռնարկներին... Ես քարոզում, յորդորում եմ զէնք առնել ու վանել թշնամիներին, նոքա քարոզում են սորկօրէն կրել մոլեկրոնների անտանելի շղթայն ի փառս Աստուծոյ... Ի՞նչ բարի Աստուած, որ չարչարելով է յայտնում մեզ իւր սէրը... չը գիտեմ... խելքս չէ գորում...

Անշուշտ ընթերցողը տեսնում է երիտասարդի հոգւոյն ալեկոծութիւնն, թախծալից հայրենասիրութիւն ու սէր զուգախառնուած միմեանց հետ։ Աւելորդ է ասել թէ ով էր. որովհետև՝ Ամկայ թագաւորին շառաւիղն լինելն արդէն քանիցս յայտնեց ինք իւր մենախօսութեան մէջ։

Սա Յակովբ-Ամիրայի միակ որդին, Գարեգինն է, բնութեամբ տաք ու վառվռուն։

Ամկայ անուանական թագաւորութիւնը, որ հազիւ կարելի է մի փոքրիկ նախարարութիւն համարել, գտնւում էր Վասպուրական նահանգը, Բզնունեաց ծովակի արևելեան՝ իսկ Բանդումահուն գետի հարաւային կողմը, Գնունեաց մասնին մէջ։ Արծրունի ցեղից ոմանք

իբրև թագաւոր իշխում են մինչև ԺԵ դարի սկիզբը, Ջելալէդդին սուլթանի արշաւանաց առէն, ապա ընչւում է հետզհետէ յաջորդաբար արշաւող մողոլների, մանաւանդ յիշեալ Ջելալէդդին սուլթանի բարբարոս հարուածներից...

Ամկայ ամրոցը, որ բարձրանում է ծովեզրը մի անջատ, անմատչելի, սեպացած կոնի նման ահաւոր լեռնաժայռի գլխին, իբր ամուր ապաստանի՝ մեծ դեր է խաղացած պատերազմների ժամանակ, որի աւերակների հետքերն իսկ ապացուցում են մեր ասածները։

Նա զարդարուած է եղել սրբատաշ, ամրաշէն բուրգերով, լայնանիստ պարսպով, հընադարեան ճարտարաշէն դարաններով ապառաժի գլխին։ Ներքնուղի քարանձաւով հաղորդակցութիւն ունի եղել՝ ծովի կողմից, դուրսի հետ, որի մուտքը յայտնի էր միայն Շահ-Արմէնին։ Ամկայ անուանական թագաւորութեան անկումից 130—50 տարի յետոյ ապրում էր նորա օրինաւոր ժառանգը, Գարեգին Արծրունին, որ ներկայացաւ մեզ։

Իշխանը ծանօթ լինելով իւր պապերի պատմութեան, տեսնելով բարբարոս մահմէտականների հարստահարութիւնքը, իւր տիրաբար պաշտպանելու անկարողութիւնը, հանրային

ստրկութիւնը, ստրկական դաստիարակութիւնը, իւր զգայուն, մելամաղձոտ սիրտը լեցւում էր հրով. լեցւում էր կրակով։ Նա յուսահատաբար ձեռնարկեց մի քանի անգամ ընդհանուր յեղափոխութիւն յարուցանելու, գրգռելու գերիները բռնաւորների դէմ և պիտի յաջողէր, եթէ կղերական մարմինը ոտք չելնէր։ Վասնորոյ մտադրած էր հեռանալ Վասպուրականից, անցնիլ անծանօթ գաւառներ, չը տեսնել իւր հայրենեաց կործանումն, իւր հարազատների Քրիստոնէական, անպարտակիր մարտիրոսութիւնքն, կամ ինչպէս ինքն ասում էր, յիմարաբար սրին գլուխ կարկառելները...

Մի երկու ժամ մտախոհ, մենախօսելով, թոյլ տուեց որ արապը գնայ իւր ուզածին պէս։ Զարմացմամբ տեսաւ իւր գնալիք աւանը յանկարծ իւր առաջ։

Խիտ այգիներով պլլուած, դարաւանդի վերայ, սիրուն օւասիսի նման բազմած էր հնադարեան Ալուրը։

Աւանդութիւնն ասում է, թէ այս գիւղ շինուած է Ս. Բարդուղիմէոս առաքելից և Ալուր կամ Ալլուր անունը առած նորանից։

Գիւղի տները առհասարակ գետնափոր, ցեխաշէն էին։ Գարեգին Ալուրը տեսնելիս՝ ուշաբերեցաւ, թողեց մտախոհութիւնը, իւր ա-

նելիքը անմիջապէս որոշելով խթեց ձիու կողերին։ Արապը իսկոյն սլացաւ նեղ, բաւիղի նըման փողոցներով, ապա գիւղի իշխանին, Խոջա-Բալասի դրան առաջ կանգնեց։

Երիտասարդը վար ցատկելիս տեսաւ մի սիրուն աղջիկ, որ անձայն, ակնկոր արապի սանձից բռնած՝ կանգնած էր։

—Բարո՛վ... Նազենի՛կ,—մրմնջեց կտրիճը երկիւղով աչերը շուրջ ածելով, ստուգելու համար թէ կա՞ն էրենց խօսքը լսողներ։

—Բարո՛վ, Գարեգին ջան,—շշնջեց կոյսը կարմրելով, որին Գարեգին Նազենիկ էր անուանում.—խնդրեմ, հոգի՛ ջան, էլ մի՛ խօսիր, ներս մտի՛ր, չը լինի թէ մեզ իրար մօտ տեսնեն...

—Խե՜նթ ես, Նազենի՛կ, ես քեզի համար եկայ... չը խօսե՞մ...

—Ո՛չ... այստեղ ո՛չ...

—Հապա ո՞ւր...

—Երեկոյեան, կամ եթէ ուզենաս մի ժամ յետոյ, իսկ Նանէն քեզ պիտի առաջնորդէ ինձ մօտ...

—Որ պռօշներդ ծծեմ...

Նազենիկ չը պատասխանեց, կարմրելով շուռ տուեց դէմքը։

—Խօջան տա՞նն է,—հարցուց Գարեգին...

—Այո՛, Ներս մայր։

—Ո՜հ... Նազենիկ, որչափ եմ սիրում քեզ...

—Ներս մա՛յր...

—Առանց համբոյրի՞...

—Ամօթ է... Ներս մայր... քարերն ականջ ունին...

Գարեգին մի անկուշտ հայեացք ձգեց օրիորդի ջինջ աչերին մէջ, ուր կարծես լճացած էր մի վսեմ հրապոյր, Գարեգնի էութիւնը... ապա ուրախ, զուարթ հառաչով Ներս մօտաւ, Նազենիկը թողլով արապի սանձից բռնած։

Խրճիթի ներսը, մի մութ անկիւն պպզած էին տասնի չափ շինականներ, երբ Ներս մօտաւ արքայազունը. նոքա ակնածութեամբ ոտքի ելան, երիտասարդը ժպտագին ողջոյնելով անցաւ վերին անկիւնը։

Խօջա-Բալաս՝ տան տէրը, գիւղի մելիքը, որ մի վաթսունամեայ մարդ էր, նախ ինքն ակնածութեամբ մօտեցաւ Գարեգնին, գլուխը բանալով համբուրեց նորա ձեռը, ապա՝ ընկերքը կարգաւ փութացին ի համբոյր աջոյն Վասպուրականի անկեալ վեհափառութեան, թագազուրկ թագաւորազնին։

—Բարով եկաք, *թագաւոր*,—մրմնջեցին յարգական արարողութիւնից յետոյ.—ինչպէս էք, լա՞ւ էք։

—Լա՛ւ…

—Միա՞յն էք… սպասաւոր չէ՞ք առած…

—Ո՛չ, Մահալը առանձին թողուցի այսօր…

—Բայց… չէ՞ք երկնչում դարանամուտ թշնամիներից…

—Է՛հ, աւելի լաւ, շուտ կը մեռնինք, չենք տեսնիլ հայրենեաց աւար աւերը, Թուրքերի ցած բռնութիւնները…

—Ի՞նչ կայ Վանայ մէջ, լուր չունի՞ք… Նոր բաներ չկա՞ն…

—Լուրեր կը պակասի՞ն… հարստահարութիւն, սպանութիւն, հրձիգ, աւար, աւեր, առեւանգութիւն այս բոլորը միշտ կան ու պիտի լինին յաւիտեան…

—Աւա՜ղ, շատ ճշմարիտ էք խօսում… պիտի լինի ու մնայ ողբացեալ Հայաստանը այս զարհուրելի ճակատագրի ծանրութեան տակ ճնշուած։

—Արդէն աւերակ է նա… ի՞նչ մնաց անցած փառքից. ի՞նչ կայ մեզ համար… ո՛հ, ոչի՛նչ, ոչի՛նչ… Թուրքը յափշտակում, խլում է մեզանից մեր գանձը, սուրը, սիրականը, կրօնը, ազգութիւնը, կեանքը, մի խօսքով այն բոլոր տարրերքը, որոնք պիտի զարգացնէին Հայուն ազգայնութեան սաղմը…

—Ողբալի՜ օրեր…

—Մերն այդ է… խօսք… միթէ պառաւի նման արտասուելով պիտի փրկուինք… երբէք, լսե՞լ էք մեր պապերի գործերից, նոքա երբ միանում, դիմադրաւում էին թշնամուն, մանաւանդ թուրքին զէն ի ձեռին երևում, փախչում էին ամենքը, իսկ երբ իրար մատնում, կարեկցութիւն, անգութից գթութիւն խնդրում, բռնանում, անում էին նոքա այն՝ ինչ որ ուսուցանում է ուղտապան Մէհմէտի կրօնը… Այժմ մեր ոյժերը ջլատուած, ստըրկացած ենք մենք, մեր ստրկութիւն միայն Աւետարանի օրինաց վերայ է ծրագրուած… գուցէ, ինչպէս ասում են ս. Հարք, մեր մեղքին համար պատժել է մեզ Աստուած… ո՛հ, թողէք, չը գիտեմ ինչ խօսիլս… չեմ կարող ժուժել այս վատ ազգի ներկայութեան, քանի՜ քանի՜ յորդորներ ու խրախոյսներ կարդացի հային, սպառեցի ահագին հարստութիւնս, չըկարողացայ անշարժ հայի ոգին շարժել… ինձ դէմ ելան կաթողիկոս, եպիսկոպոսներ ու սինքոր վարդապետներ… Աւետարանի սկզբունքով արգիլեցին սուր առնել… այո՛. „որ սուր առնէ՝ անկցի սրով“:

—Սոքա՛, թագաւո՛ր, Աստուածային պատուհասներ են մեզ համար, մեր մեղքին համար առաքուած իբրև ոգիք բարկութեան,

այո՛, ճշմարիտ են ասում կղերները, նոքա երբեւ անկրօն անում են չարիք, բայց մենք չենք կարող...

—Այդ գաղափարը,—որոտաց Գարեգին,—սպաննեց մեզ և պիտի ոչնչացնէ մեր վատոյժ սերունդը... Հէնց դորա դէմ էի կռւում ես, բարեկա՛մ... Մենք չենք իմանում աւետարանի խօսքը։

Խոջան մի ահագին ծխամորճ (չիպուխ) կա՛րկառեց իշխանին, որի ծայրը զարդարուած էր կոնաձև դեղին սաթով։

—Չե՛ս հարցնում,—ասաց նիւթը փոխելով,—թէ ի՞նչ նեղութիւն ունինք, թէ ի՞նչու ենք միասին հաւաքուած։

—Սպասում էի՝ որ դուք ասէիք։

—Այսօր քաղաքից Կամ-պէյը մեզ գալով, պատուիրեց պատրաստել ճոխ օժիտ և հինգ օր յետոյ Նազենիկը Ամիրայի կանանոցը տանել...

Կարծես մի կայծակ ընկաւ Գարեգնի գլխին, ընդոստ վեր ցատկելով, այլայլած, դողդոջուն ձայնով հարցուց.

—Ի՞նչ,—լածին հաւատալ չուզելով,—ի՞նչ, Նազենիկը կանանոց տանե՛լ... երբե՛ք...

—Անտարակոյս այդ կարելի չէ...

—Երիտասարդութի՛ւն,—մրմռաց Գարեգին փոքր ինչ շունչ առնելով։

—Ի՞նչ անելու է... չը գիտեմ... բայց կարելի չէ կանանոցը տանել... Երանի՜ մեռնէր նա... Խորհում ենք թունաւորել... բայց սպաննել զաւակն... կրկին ոճի՜ր...

—Ո՜չ, ո՛չ... Նազենիկ պիտի ապրի՜...

—Անպաշտպան աղջիկը ի՞նչպէս պիտի ապրի... Թուրքանա՞յ, ուրանա՞յ, հարէմի մէջ հիւծուի՞...

—Ո՛չ, նա պիտի ապրի,—լրջացած պատասխանեց Արծրունին,—պիտի ապրի իբրև հայ... հաւատացէք աչքիս ոչինչ չի երևում... կրօ՛ն, մե՛ղք, ամեն ինչ մոռանում եմ, եթէ խնդիրը նորա վրայ է... Նա անտէր չէ, խոջա՛, ահաւասիկ եմ ես, լսի՛ր, ես եմ նորա տէրը, ես նորան սիրում եմ կեանքիս հաւասար... Նա է իմ միակ սէրս ու մխիթարանքս։

Բալաս ուրախութիւնից այլայլած՝

—Դո՞ւ, թագաւո՛ր; ինչպէ՞ս... հարցրեց յուզմամբ։

—Ես որոշած էի ամուսնանալ նորա հետ...

—Ախար նա գեղջո՛ւկ է, թագաւո՛ր։

—Եթէ ես լինէի հազար տարի առաջ, ծընուէի արքունի ծիրանիների մէջ, թագաւորական գահը կը կազմէի գիւղացու մաճով, գիւղացու ձեռով կը պաշտպանէի հայրենիքս, որ իւր մէջն է պահում Հայի բոլոր ազնիւ յատ-

կութիւնները և ոգէտ է օտարամուտ մոլեկան սովորութեանց... Նազենիկն է իմ իշխանուհիս... Աւելի չըխօսինք... Այս րոպէիս, խոջմ, պաշտօնապէս խնդրում եմ նորան...

—Նա քեզ մատաղ լինի, տէր իմ։

—Ո՛չ, թո՛ղ նա իմ կինը լինի...

—Թո՛ղ լինի...

Ծինականները զարմացած, ուրախացած իբար երես նայեցին, մինչդեռ Գարեգին խօսքն աւարտելով դուրս էր գնում, որովհետև Նազենիկի մասին խօսելիս յիշել էր *ժամադրութիւնը*։

Դրան առաջ սպասում էր քողածածուկ մի նորատի հարս, իշխանը տեսնելիս՝ մօտ եկաւ ու ձեռն համբուրեց։

—Բարո՛վ, Նանէ,—մրմռաց Գարեգին խորին համակրութեան շեշտով,—նա ո՞ւր է...

Նանէ գլխով նշան տուեց իրան հետևելու և առաջնորդեց նորան մի այլ սենեակ։

Այնտեղ Նազենիկ յուզուած, գունատ և դողահար սպասում էր իւր անձկալի Գարեգնին։ Նանէ մինչև դուռը ընկերացած էր։ Սիրահարները իրար դէմ եղան միայնակ։ Նոքա մի քանի վայրկեան ակնապիշ յափրացած, անյագ սիրով իրար նայեցին, ապա յանկարծ

օրիորդը փղձկելով, արտասուելով փարեցաւ կտրիճի կրծքին։

—Նազենի՛կ,—ասաց Գարեգին,—ինչո՞ւ լաց ես լինում։

—Ախա՜ր պիտի մեռնիմ... զրկուիմ քեզանից, Գարեգին, հարէմն են ուզում տանել ինձ։

—Ես ո՞ւր եմ... ո՞վ կարող է տանել, անհոգ եղիր։ Ես այժմ յայտնեցի ամեն բան։ Հայրդ իմացաւ թէ դու իմ ամուսինը պիտի լինիս. թէ ես՝ քանի որ կամ, ոչ ոք ձեռք պիտի տայ քեզ... Լսո՞ւմ ես, գառս, հրեշտա՛կս...

—Յօժարեցա՞ւ։

—Ի՞նչ կարող է ասել, ինձանից լաւին պիտի տար...

—Ուրեմն...

—Այսօր ևեթ կորոշեմ անելիքս... ո՜հ, արի՛, այլ ևս մի խոյս տար իմ գրկից, պաշտելիդ իմ, ո՜հ, որչա՜փ անուշ ես դու, Նազելիդ իմ Նազենիկ, որչա՜փ սիրուն ես դու, հոգեա՛կս, այս նռնագեղ թշերն ու բոսորավառ շրթունքը թո՞ւրքը պաչ անէ. երբէք, երբէք, քո մի համբոյրը իմ կեանքն արժէ։

Նազենիկ խոյս չը տուեց, անձնատուր եղաւ փեսացուի բազուկներին, որը պինդ սեղմած՝ համբուրում էր անհուն սիրով նորա ա-

չիկները, թշերը և գռուզ գանգուրների խոպոպները՝ որ վայրենաբար իջնում էին նորա սպիտակաթոյր կամ ադամանդագոյն, ձուաձև դէմքի բոլորտիքը՝ իբրև զեփիւռից յուզուած թեթև ալեակներ։

---

„Զայն գուժեաց Այրարատայ եւ հընչեցին բեւեռք կրկին"...

„Մասեաց Աղաւնի".

Գ

ԳՈՒԺԿԱՆ

Այդ օրն ևեթ որոշուած էր Նազենիկի բախտը։

Արծրունին իբրև նշան, Խոջա-Բալասին յանձնեց ոսկէ արծուի վերայ ընդելուզուած ադամանդեայ և սէյլան մի ծանրագին մանեակ, որ արքունական մի գոհարեղէն էր իւր Տիկին-Մօրէն մնացած։

Նազենիկ նշանուած էր… Երկրորդ օրուայ գիշերը պիտի ծպտէր իբրև երիտասարդ, ընկերանալով Գարեգնին՝ գնար դէպի Ղարաբաղ։ Արքայազունը այս կարգադրութիւնն անելից յետոյ՝ այն գիշերը ձի նստելով վերադարձաւ

Վան, ճանապարհի անհրաժեշտ ծախք վեր առնելու....

Որպէս՝ յիշեցինք՝ առաւօտից ալրուած էր երկինքը։ Մի գորշ, ամպային ովկիանոսի տակ թաղուած էր բնութիւնը, դադարած քամին միայն ծովակի մեղմիկ ծփանաց, օրօրման խուլ աղաղակը վրդովում էր գիշերական մահագոյն լռութիւնը։ Ծանր աղջամուղջի մէջ թաղուած էր Վանը, միայն բարձրանիստ բերդի գագաթին նուազ-նուազ նշուլում էր փոխան փարոսի մի աղօտ ճրագ...

Արապը սլանում էր քառասմբակ և մերթ արշաւասոյլը ուշիմ կենդանին՝ կարծես խօլ խաւարից ազդուելով, երկիւղ էր կրում խրխնջել...

Նազենիկի գողտրիկ յիշատակը, ժամադրութեան արդիւնքը անջինջ պատկերի պէս կախուած էին ձիաւորի հոգւոյն անծայր գմբեթից։ Լսում էր նորաքնքուշիկ հառաչը, զգում անուշակ սրտի արոփիւնը իւր առնացի լանջի վերայ, խօսում, յուսադրում էր իրեն։ Ապա յաջորդում էին նոր յոյսեր, յառաջադրութիւններ, որոց իրագործողն է լինում անկեղծ սիրահարը, սակայն՝ յամրացած տրամաբանութիւնը նիրհելով, անջինջ մտապատկերը հալածում էր նոցա, ինք միայն կանգուն, Նազենիկ իւր գրկի մէջ մնում էր արձանացած։

Նա գտնում էր ինքզինք մի երջանկաւէտ վայր, ուր օդասիլ աղաւնեակի պէս թեթեւ ճախր առնելով քաշւում էր հեռո՛ւ, հեռո՛ւ իւր աննման գանձով, հեռու՝ մինչեւ այն խուցը՝ ուր գրկեց նորան, Նազենիկին՝ որին պատրաստ էր զոհ բերել և իւր կեանքը, եթէ այն հայրենեաց վերջին նուիրած սպեղանի չը լինէր։

Եթէ ցերեկ լինէր, անտարակոյս, հանդիպողը պիտի տեսնէր Արծրունու գոհ, ժպտագին դէմքը, բարեբախտաբար խաւարին քօղը հազիւ ուրեմն նորան իւր ձեւով մի աւելի կոշտ աղջամուղջի թանձր՛ շերտ էր ներկայացնում մօտից դիտողին։

Երկինք պարուրող միակտուր ամպը սկսել էր մաղմաղել անձրեւի ամենափոքր չիթեր, եթէ կարելի է ասել,—հիւլէներ,—որոց մեր ժողովուրդը անուանում է լիմար թրջող (ախմախ իսլատան) կամ թաթաւ։

Ճանապարհորդը չէր զգում, շարունակում էր թաղուել իւր սրտին մէջ։ Անտարակոյս արապն ինքն զգացուց թէ հասած է քաղաք, հասած է իրենց դրան առաջ։

Արծրունին ընտանիք չունէր, միայն էր ինք, վասնորոյ բնակւում էր նա մի հեռաւոր ազգականին տանը և այդ տունը իւրն էր ան-

ուանում։ Տանուտէրը մի ծերունի քահանայ էր, ունէր որդիք և թոռներ։

Գարեգին իջաւ ձիուց, արապը անձամբ գոմ տարաւ, աւուլտի մի խուրձ նետեց նորա առաջ, արձակեց ծրարուած պոչի հանգոյցը, բաշերի հիւսերը, մի քանի րոպէ շոյեց սիրուն գլուխը, ապա մեքենապէս, կամ բնազդմամբ համբուրեց կենդանու իմացականութեամբ փայլփլող խոշոր աչքերը և հապճէպ վեր ելաւ իւր սենեակը, զուարթադին մի ինչ որ եկեղեցական մեղեդի մրմռալով։

Նորա բնակարանը ճոխ և արքայական զարդեր չունէր, մի սիրուն, քանդակուած կաղնեայ մահճակալ դրուած կար վերին անկիւնը, նորա առաջ մի քանի աթոռներ։ Յատակը սակայն ծածկուած էր մի ընտիր պարսիկ գորգով։

Տակաւին Գարեգին մերկացած չէր զէն ու զարդը, երբ տանուտէրը, Տ. Քրիստափոր այլայլած դէմքով ներս մտաւ։

—Ողջո՛յն, իշխա՛ն.—մրմռաց նա։

—Օրհնեա՛ տէր,—պատասխանեց Արծրունին, ուշադիր զննելով ծերունու դէմքը, ապա աւելացուց,—Տէր հա՛յր, ի՞նչ ունիս. քեզ այլայլած, մոլորած, տխուր եմ տեսնում։

—Ճշմարիտ է, իշխան, սաստիկ այլայլած, մոլորած եմ, ի՞նչ անելիքս չը գիտեմ։ «Զար-

ժանահաս մահտարաժամ ի ցասմանէ քում հրամանի›... կըսէ շարականը... այսօր վերանորոգում է տարաժամ մահը մեր ապերջանիկ հայրենեաց ծոցին մէջ...

—Վա՜... Նոր բա՞ն...

—Միա՛յն կաս, Երուսաղէ՛մ, դեռ չը լսեցի՞ր...

—Ո՛չ... ի՞նչ կայ...

—Գուժկան հասա՞ւ...

—Գուժկա՞ն...

—Այո՛, իշխա՛ն, գուժկան հասաւ թէ Պարսից Թահմասպ կամ Թահմազ-Կուլի շահը մի խոշոր բանակով գալիս է Վասպուրական... Վաղը այստեղ կը լինի... Ամիրան ամրանում է բերդին մէջ, իսկ մենք, միայն հայերս, մընալու ենք դուրսը, անտէ՛ր, անպաշտպան՝ „զանձինս մեր ապաստան վերին տեսչութեան...“

Այս խօսքը ասում էր բարի Տէրտէրը և պատճառ համարում հայոց մեղքը, այն մեղքը՝ որի անունը միայն լսած էր Թշուառ ազգը իւր հոգևոր հայրերից՝ առանց ճաշակելու։

Մի քանի րոպէի մէջ բոլորովին փոխուած էր Գարեգին։ Մարած էր կարծես նորա հոգին լուսաւորող արևը, խուսափած բերկրութիւնը. Նազենի՛կ, ինքզինք գտնում էր վե-

ըլստին այն անլոյս խաւարի մէջ՝ ուր թաղուած գտանք նորան սկզբին անգամ։

Նա տպուշ դէմքով ունկնդրում էր, յանկարծ քահանային դառնալով

—Տէր հայր, —հարցուց, —սա՛, ուրեմն ի՞նչ անենք...

—Ի՞նչ պիտի անենք, օրհնեալ լինիս, պահուըտինք, աղօթե՛նք։

—Լա՛ւ... ո՞ւր պահուըտինք, կա՞ն ապաստաններ։ Ի՞նչ պիտի անէ դժբախտ անզէն ժողովուրդը...

—Ինչ որ Աստուած սահմանած է, կը լինի։ Մենք ի՞նչ կարող ենք անել... Սուր չենք կարող առնել, չենք կարող դիմադրել, չենք կարող Թուրքից պաշտպանութիւն գտնել, նորան միայն պէտք է վճարել, վճարել ու վճարել ամենածանր հարկեր... Բայց՝ պաշտպանութի՛ւն, իրաւունք ունի՞նք խնդրելու... „Մատնեցաք ի ձեռս անօրինաց, խստաց և ապըստամբողաց...“ —Լցաւ գչափ անօրէնութեան „մերոյ, դառնացաւ և բարձրացաւ Տէր ի վերայ ազգի չարի...“ Սուրբ գրքի այս խօսքը կատարուեցաւ, և կատարուեցաւ այս.—Նըստէաք առ գըամբք Բաբելոնի, լալաք յուշ անելով զքեզ՝ Երուսաղէմ...“ Որդեակ իմ, մեր մեղաց պատիժն է այս պատուհաս, երանի՜

անտրտունջ կրողին, երանի՜ նմա որ իբրև զգաւոն անպարտակիր վարի ի տպանդ վասն փառաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ըն-դանիլ զպսակ մարտիրոսութեան ի վկայու-թեան նորան“։

—Ինչո՞ւ կարելի չէ սուր առնել, ինչո՞ւ, Տէր հայր, շարունակ կրկնում էք այդ խօսքը, —բարկացաւ Տէր ի վերայ ազգի չարի,—թէ մեր մեղաց պատիժն ենք կրում... Ի՞նչ արած է Հայը, միթէ նորա ջերմեռանդութիւնը, ծայրահեղ կրօնասիրութիւնը, աւետարանական ստրկութիւնը բաւական չեն նորան քաւելու կարծուած մեղքերից... Է՜հ... Ես չեմ իմա-նում... չեմ իմանում, թէ ի՞նչ են արած հայերը։

—Պատմութիւնը կարդա՛, որդեակ իմ, Ադ-տէ Հայրապետից մինչև մեր օրերը, Հայը հա-լածելով իւր հովիւներին, ջերմօրէն կապուել չէ իւր սրբազան կրօնի հետ... անթիւ անհա-մար հրաշք տեսնելով արհամարհած, ջրած է ամեն սուրբ օրէնք... Ի՞նչ առեղծուածներ, ի՞նչ ներքին սպանութիւններ չեն տեսնուած մեր մէջ... Ուզո՞ւմ ես, թուեմ մի առ մի...

—Դու գիտես, որ,—միջամտեց իշխանա-զունը,—ես գլուխ չունիմ այդպիսի կնճռոտ վէճերի, սակայն՝ իմ խղճի ձայնին անսալով, այդ մեղքը, Հայ ազգին վերագրուած մեղքը՝

մի սև գրպարտութիւն է իր բարի, տառաքինի, սուրբ Հայրերի կողմից յօրինուած, որ քարշ է ձգուած Հայի ճակատով դարերի ընթացքում։ Մեղաւո՞ր է որդին՝ երբ Հայրը գործում է մի ինչ որ մեղք...

—Անտարակո՛յս...

—Ուրեմն, պէտք է այսպէս եզրակացնել. մեր Լուսաւորիչ ամենամեղաւոր մարդ է, որովհետև նորա Հայրն էր Անակը, արքայասպան, եղբայրասպան, սրբապիղծ և դաւաճան Անակը...

—Մեղա՜յ Աստուծոյ, ասա՛, որդեա՛կ, մեղայ ասա՛...

—Ինչե՞ն, ճշմարտութիւն խօսելո՞ւս մեղայ ասեմ... Է՛հ, ինչ և իցէ... Դու այն ասա՛, կարո՞ղ ես վաղը ևեթ եկեղեցւոյ մէջ յորդորել ժողովրդին զէնքի դիմելու, դիմագրաւելու խանին... Այս է ամենակարևոր հարցը...

—Մեղաց աղբի՞ւր լինիմ... Երբէք, երբէք... Դու չե՞ս իմանում Տիրոջ խօսքը,—որ սուր առնէ՝ անկցի՛ սրով.—Հէնց դա չէ՞ր մեր մեղքը... Ո՛չ, ո՛չ, սուրի պէտք չըկայ... „Յամենայն ժամ աղօթս արարէք զի մի անկանիջիք ի փորձութիւն“։ Ո՛չ, իշխա՛ն, ես չեմ կարող քո գաղափարները տարածել ժողովրդի մէջ,—„վա՜յ այնմիկ որ գայթակղեցուցանէ զմի ի փոքրկանցս այսցանէ“։ Արդէն դու այդ էիր ուզում, առիթ

էր պակասում քեզ զէնք քարոզելու, աշխարհի սին փառքը ժառանգելու… ո՛չ, ո՛չ, ես „քաւեալ կամ յանօրէն խրատէ քումմէ“։

Արծրունին չը պատասխանեց, վեր ու վար էր ճեմում։

Նորա գունաթափ դէմքի վերայ նկարուեցաւ զայրոյթը իւր բոլոր դառնութեամբ։ Շրթունքը դողդոջում, ատամները կափկափում, մի ցուրտ սարսուռ սողոսկում էր նորա երիտասարդ, պայազատ մայլերի մէջ… Մի ժամ առաջ սիրով յուսաւորուած ոգին՝ մթնած էր, սեւ ամպերի, անկերպարան գաղափարների շեղջեր զուգախառն գլորւում, ուրուականի պէս խուսափում էին նորա մտաց անծայրածիր հորիզոնով…

Եւ էր գալիս սանձուած վրէժխնդրութիւնը կատաղութեան բոլոր ուժգնութեամբ և ընդհարւում այն սառնաշէն խոշոր անջրպետին, կրօնական ամենահին (իւր մէջ) գաղափարին՝ որ ձուլուած էր այս խօսքով,—որ սուր առնէ՝ անկցի սրով։—Հոգեկան այս վիճակի մէջ՝ իշխանը մոռվի մի կծու անէծք, մի անկերպարան հայհոյանք արձակեց,—ո՛ւմ… ո՛ւր… է՜հ… սարսափում էր ճշգրտել, որոշել… Ցանկարծ՝ զարմանալի արագութեամբ, մնկաբերեց այն աղէտալի տեսարանը, որ տեղի պի-

տի ունենար... Ահա՛, ծովեզրը ծածկուած է մեռեալ և հոգեվարք դիակներով, որոց ոտնակոխ արած, կանգնած է Պարսից անողոք խուժանը... Շահը... Հարիւրաւոր սիրուն աղջիկներ, սարսափահար աղաւնիների նման՝ իրենց սիրելեաց դիակների մօտ, շղթայակապ, կանգնած են տրփոտ զօրաց սայրասուր օղակին մէջ... նոցա մէջն է և Նազենիկ, արտասուքն աչքերին, ակնկոր... անպաշտպան...

—Երբէ՛ք,—որոտաց Գարեգին դեռ կենդանի արքայական արեան հոսանքից մղուած, տարկացած հպարտութեան կատաղութեամբ մոլեգնած, յանկարծ քահանայի առաջ կանգառնելով, զայրացայտ, հրալիր աչերը շեշտակի նորա շիջելավառ բիբերի խորքը սևեռելով,—երբէ՛ք... չեմ կարող համբերել... Թքնում եմ ես քո դժոխքի կողքին և օրէնքի կողքին՝ եթէ՛ յանցանք է սրով զանձն պաշտպանելը... Թողնե՞մ որ վատ ելուզակները մտնեն, կողոպտեն, այրեն, սպաննեն անգթաբար, իմ աչքի առաջ՝ գերի վարեն իմ սպաշտած էակը... զոհեն իրենց վայրագ կրից իմ սրտի շուշանը, իմ կեանքի անբիծ վարդը... արիւնաթաթաւ թողնեն ու գնան իմ անբախտ, մարտիրոս հայրենիքը... Ո՛չ... ո՛չ... դոքա չը պիտի կատար-

ուլին։—Արագ շարժմամբ մօտենալով դրան՝ ձայնեց.—Մահմ՜լ, Մահմ՜լ...

—Կը գամ,—պատասխանեց մի առնացի ձայն վարի յարկից և լսուեցաւ խոշոր քայլերի աղմուկը։

Կարծես անապատի մի քարթօշ-իժ էր, որ նայէց քահանային. բարի Տէրտէրը սարսափահար ունկնդրեց արքայազնի խօսքը՝ որ համանիշ էր հայհոյանքի։ Երբ Գարեգին Մահալին ձայնելու հեռացաւ, Տ. Քրիստափոր ուշ՚աբբեցաւ, ազատուեց նորա դիւթիչ ակնարկի ազդեցութիւնից, այլայլած ոտքի ելաւ մրմռալով.

—Քո պապերին պէս անսաստ ես, իշխա՛ն, նոքա ևս այդ օրինակ սիրտ ունէին... զԱստուած հայհոյեցին, զոհուեցան նորա ահեղ վրէժխնդրութեան։

—Ես չեմ ուզում վիճել... ժամանակը սուղ է, սակայն՝ առ այժմ այսչափ կասեմ։ Աստուած ինք որ վրէժ ունի, ինչ՞ու է արգիլում մարդուն վրէժխնդիր լինելուց... Խե՛ղճ Տէրտէր, բանականութեան ձայնն անգամ մեռած է ձեր մէջ կրօնի սառ դիակին տակ... մեռած է կրօնի պարզ ու վսեմ ոգին, մեռած է և ձեր անբախտ ժողովուրդը թիւր քարոզութեան շնորհիւ... Վան և իւր գիւղերը 80 բիւր ժողովուրդ, միայն հայ ժողովուրդ ունին, չունին

սակայն ուժսուն անվախ, նախապաշարումից զերծ մարդիկ... ամենի սիրտը մեռուցել էք դուք, կղերնե՛րդ։ Տէրտէր, էր չես լինում Ղևոնդ, Օհան Մանդակունի, Սահակ Ձորափորեցի, Սահա՛կ, որ յետ մահուն անգամ փըրկեց իւր հայրենիքը մի՛ րոպէ մոլեկան սրի ճարակ լինելուց։ Տէրտէր, էր չես քարոզում մեռնել կրօնի համար, միթէ առաջին սուր քաշողը ես չեմ լինում, եթէ կրօնական ս. պատերազմ բացուի։ Մինչև ե՞րբ բարոյապէս սպաննէք ազգը, կղեր չէ՞ն նոյն իսկ Լուսաւորչի որդիքն ու թոռունքը՝ որ չը խնայեցին ոչ մի բան հայրենի գահը անսասան պահելու համար։ Քո պապերին պէս ես, ասում է, դու ևս մօր կողմանից Արծրունի չե՞ս, և քո պապերը չէ՞ն Մեհրուժան, Գագիկ, Սենեքերիմ, մի խօսքով բոլոր Արծրունեաց վատն ու լաւը...

—Ո՛չ... իմ պապերը չեն...

—Ես հպարտ եմ նոցա անունը կրելուս, և ուրախ ձեզ պէս Արծրունի ազգական չունենալուս...

Քահանան առանց պատասխանելու դուրս ելաւ քթի տակից մրմռալով.

—Անհաւատ է սա, ո՛վ Տէր, ներէ՛ր սորան, ներէ՛ր, ո՛ խաչեալ Փրկիչդ աշխարհի, Աստուածորդի և Աստուած...

—Կորսուծ՛ք,—ռունաց շղթայակապ կորիւնը,—կորսուծ՛ք… Միթէ Արծկէի եպիսկոպոսը չէ՞ր հօրենական տանս կործանման պատճառներից մինը, նա չէ՞ր Մելիք-Չհանին յորդորողը…

Արդէն սրահի մէջտեղ անխօս կանգնած էր մի ամրակազմ, արևակէզ, վիրաւոր դէմքով մարդ, որի վերայ առողջ էին միայն սև, սուր, հրատի նման փայլուն աչերը, իսկ ճակատ, քիթ, շրթունք, այտ ու կզակ ծածկուած ակօսաւոր սպիներով։

—Մահմ՛լ,—հարցուց իշխանը մարդուն մօտենալով,—կարո՞ղ ես այս գիշեր ևեթ քեզ նման մի քանի մարդիկ ճարել…

Մահալ տրտմապէս գլուխն օրօրեց առանց խօսելու, որ ժխտում էր իշխանի առաջարկը բացասական նշանով։

—Ուրեմն, ի՞նչ անենք, Մահմ՛լ։

—Ցոյս չունիմ,—լակոնիկ ոճով պատասխանեց լեռնականը,—պիտի ջանամ ճարել։ Եթէ գտանք, լաւ, իսկ եթէ ոչ, ես ու դու։ Կարծեմ կարող ենք մի քանի շուն խողխողել ու ընկնել քաջի մահով…

Արծրունին գորովագին համբուրեց նորա խորշոմած ճակատը։

---

„Թահմազ—Կուլի գազան վայրագ,
„Իբր զվիշապ մի սանձարձակ
„Սլացեալ գայ մռնչելով՝
„Թողուլ զՎան անյիշատակ...
„Եւ դու Աստուած, վրէժխնդիր,
„Արի՛ ողբալ զՎասպուրական,
„Նստի՛նք ի կոծ յամբախտ Վան"...

Յով. Վ. Վարագացի.

Դ.

## ԹԱՀՄԱԶ—ԿՈՒԼԻ—ԽԱՆ

Թահմազ-Կուլիի արշաւանաց գոյժը կայծակի արագութեամբ հասած էր բովանդակ Վասպուրականին, Հարքին, Խնուսին, Մուշին, Խլաթին և այլ մերձաւոր գաւառներին։

Երբ անձնապաշտպանութեան օրինաւոր միջոցներ կը պակասին մի ազգի, մի անհատի՝ դիմում են խորամանկութեան, զարտուղի միջոցների։ Կրօնական սկզբունքը թէև խլում է սուրը զինուորի ձեռքից, բայց անձնապաշտպա-

նութեան գաղափարը մնում է անջինջ, որ աւելի վատն է, երբեմն ցած միջոցներով երևում է նա սօրուկների մէջ քօղարկուած... Կրօնական գաղափարը որչափ և խոր ազգէ, որչափ և *միստիք* լինի մարդը, որչափ և արուի ու մրկի երկնից անհուն սիրով, չէ կարող դիւրաւ հրաժարիլ այն աշխարհից՝ որին ինք ցաւոց հովիտ, *աշխար* և չը գիտեմ այլ ինչ է անուանում դէպի կեանքը տածած կեղծ արհամարհանքը յայտնելու. սակայն՝ մահուան երկիւղը իսկոյն վանելով այդ ամենը՝ ստիպում է նորան բնաբերաբար պահպանել իւր գոյքն ու գոյութիւնը, կեանքն ու արևը դահճի սրից։ Հայը թողած էր սուրը, կղերը աշխարհակալներին նպաստելով՝ մի ահագին անջրպետ էր բացած նորա և զէնքի միջև։ Հետևապէս՝ Հայեր իրենց անձերը պաշտպանում էին տարբեր միջոցներով։ Վանեցոց տները շինուած էին զարմանալի յատակագծերով։ Պատերի մէջ խորշեր, ներքին հորեր, քարանձաւներ իբրև թագստոց պատրաստ կային ինչք և ստացուածք անկորուստ պահելու, այնպէս որ՝ ամենախուզարկու աչքերն անգամ ստէպ վրիպում էին նըկուղներից...

Աննկարագրելի արագութեամբ՝ քաղաքացի և շինական՝ ստացուածքի ծանրագին մասերը

պահելով՝ խումբ խումբ սկսան ապաստանարան որոնել վանքերի ծոցերը։ Աղթամար, Սուրբ, Ձոր-Խափան, Նարեկ, Անգղ-Վանք, Լիմ, Կըտուց անապատները ծովացան բազմութեամբ, այնուամենայնիւ՝ ժողովուրդի 7/8 մասը դարձեալ դուրսը մնաց թշնամու առաջ, որի առաջ, որովհետև թէ վանքերը քիչ կը գային և թէ ուր դիմելները չը գիտէին։ Առտօս, Վարագ և այլ լեռներ ևս ծածկուեցան անզէն բնիկներով։ Մոռանում է մայրը՝ որդին, հայրը՝ դուստրը, այրը՝ ամուսինը, սիրելին՝ սիրելի և փախչում նման վտարանդի թռչունների, որոց աղօտ իմացման մէջ դռնչում է միայն որսորդի հրազէնքին ձայնը։ Անծանօթ քարայրեր, խոր խոր ձորեր չէին բաւում ողորմելի փախստականներին...

Այս իրարանցման, այս օրհասական րոպէներին միայն Մահալն էր ժողովրդին զէնք խլելու յորդորում, բայց՝ նորա դէմ կանգնած էին ախոյեանների ջոլիրներ, սևազգեստ պաշտօնեայք սպիտակափառ Դանիէլեան Հինաւուրց Աստուծոյն, որք յորդորում էին իրենց սիրական գառներին չանսալ գազանատիպ Վըռըըշիկ, կիսավայրենի Մահալին, որ իւր անգութ իշխանին, Արծրունուն նման չէր յագենում արիւն թափելուց...

Ոշտունին թէպէտ զայրանում, թէպէտ սոված գայլի պէս ատամները կրճտում էր կատաղութիւնից, սակայն՝ չը կարողացաւ իւր դիտաւորութիւնն ի գլուխ հանել, չը կարողացաւ փաստաբանելով սթափեցնել կղերական ազդեցութեամբ ծթրած ժողովուրդը՝ որ հետեւում էր կուրօրէն յարգոյ Հարց…

Բացւում է առաւօտեան արշալոյսը, օրը ջինջ է ու պայծառ, բայց նա չունի այն կենդանութիւն, ոգեւորութիւն, որ ազդում է մարդուս ամարան օրը։ Կարծես էլ չեն երգում սարեակ, սոխակ, էլ չեն կարկաչում ագռաւ, կաչաղակ, մարի, վարուժան, չէ լսւում հովուական սրնգի տխրանուշ, մելամաղձիկ շշունչը, ոչխարների, գառների մայունը, մի ընդհանրական սուգ միայն ծաւալւում է ալեփառ արեգի ճառագայթներին հետ։

Շնկշնկում է զեփիւռը, կոհակ կոհակ թաւալում ծովակը, կարծես վերջինս միայն սպառնալիք է կարդում անգութ թշնամիին, որ փոշեղէն ամպերի մէջ ծրարուած, արեւելեան սարերի տակ երեւում է մի ահագին անշարժ կէտի նման։

Շատ չէ տեւում, չքանում են ստուերները, ետեւը ձգած ծխային ամպեր, կրակ ու բոց, շարժում է կէտը, հետզհետէ մեծանում, տա-

ըածւում արեգակի ցոլքերին մէջ փայփլելով։

Արդէն հուր ու սուր մաշել են Հաղբակը, Վանայ մի քանի գիւղերը. ահա այրւում են քաղաքին մօտի աւանները ևս. Շահ-Բաղի, Շուշանց, Լեզք։ Հրոսակների զինավառ գնդեր անդիմադիր մտնում են Վան. ծուխ, կրակ, աղաղակ, լաց ու կոծ սկսում են բարձրանալ երկինք և այերք դղրդել։

Տաճիկ Ամիրան բերդի գագաթնակէտը ե-լած՝ անփոյթ դիտում է այն երկրի աւերումը, որի բերքով ու տուրքով ապրում էր ինք. զը-լանում է մինչև անգամ մի թնդանօթ ար-ձակել։

Հրոսակների ջոկատը տակաւ առ տակաւ այրելով ու քանդելով՝ մօտենում է Հայոց ս. Նշան թաղին։ Ալի-Խան, նոցա առաջնորդը, իբրև գիտակ Հայերի իրական վիճակին, բոլո-րովին անհոգ, համարձակ յառաջանում է իւր վաշտերով։

Ընչաքաղց զինւորներ դռներ խորտակելով մի բոպէի մէջ կողոպտում, մատնում են կրա-կին։

Ալի-Խան շրջապատեց ս. Նշան եկեղեցին։ Երբ զօրքը դուռը խորտակելու ձեռնարկեց, գնդակների մի տարափ յետ ընկրկեց նորանց։ Խանը՝ որ դրան ճիշտ դէմ ու դէմն էր կանգնած,

ձիուց թաւալգլոր վար ընկնելով փչեց հոգին։

Ալի-Խանն ընկնելիս՝ հրոսախումբը ցըր-ուեցաւ, փախաւ նեղ ու երկայն փողոցներից։ Յարմար առիթ համարեցին ս. Նշանի հերոսները այս միջոցին դուրս սլանալ։

Տ. Քրիստափորի տունը ս. Նշանի մօտն էր։ Նախ՝ նորա դուռը բացուեցաւ, ետևից Մահալը որ քարշ կըտար Արծրունու սպիտակ արաբը, իսկ եկեղեցուց դուրս խոյացան ութնի չափ սպառազէն երիտասարդներ, որ կրում էին միջնադարեան զէնքի հետ մի մի պատրոյկաւոր հրացան։

Գարեգին իսկոյն աշտանակեց ձին, Մահալ ևս իւրը հեծաւ։

Արծրունին իբրև զօրավար իւր խմբի գըլուխն անցնելով՝ յառաջացաւ դէպի Թալրիզ-Դուռ։ Ապաստան էին նեղ, կեղտոտ, ծուռ ու մուռ փողոցները, բայց՝ քաղաքացուոց պաշար-ուածլինելով՝ հանդիպեցան բանակի մի հատուածին։

—Տղա՛յք,—խօսեց զօրավարը իւր բուռն քաջերին,—անվախ հետևեցէք ինձ... ես ու Մահալ մեր ձիերով ճանապարհ պիտի բանանք սուր ի ձեռին։ Դուք էլ, սուսերամերկ մեզ հետևելով ջանացէք միմեանցից անբաժան մընալ... անխնայ խփեցէք աջ ու ահեակ... թո՛ղ

այս վատերը մեզ իբրև ստրուկներ չըսպաննեն, այլ տեսնեն թէ կան տակաւին ընտիր Հայեր... ծն... յառաջ։

Պարսիկ գնդի մէջ մեծ իրարանցում կար։ Լսելով Ալի-Խանի մահը, երկիւղ էին զգում Հայոց թաղերը խուժելու՝ կարծելով թէ՝ բոլոր ժողովուրդը զինուած, խմբուած սպասում է դիմագրաւ կռուելու։ Վասնորոյ Ջիմշիտ-Խան ընդհանուր հրամանատարը, հրամայում էր համախմբիլ նախ, ապա՝ պաշարել...

Նոքա այս խորհրդով զբաղուած, չէին նշմարում Գարեգնի խումբը։ Երբ որ յանկարծ Արծրունին արծուի արագութեամբ նետուեցաւ նոցա մէջ, մոլորեցան։ Նա շուրջանակի սուրը խփելով գունդը ճեղքեց, ինչպէս ճեղքել էր Մովսէս Կարմիր ծովին ալիքը։ Պարսիկք ճանապարհ տուին յաղթականին։ Րոպէական խորհրդից յետոյ՝ Ջիմշիտ-Խան Հայոց քիչւորութիւնն նկատելով՝ ինք անձամբ ընկաւ նոցա վերայ. ահա, սիրտ առան պարսիկները, զօրավարին հետևելով ձայն տուին շրջապատելու։

Այս գործողութիւնն այնչափ անակնկալ, այնչափ արագ կատարուեցաւ՝ որ Գարեգին ստիպուեցաւ դերբնական ճիգերով խլթել արապին, զէն ի ձեռ ուղի բանալ... Խե՜ղճ տղան, մահուան հետ էր կռւում, թրին ծայրով խի-

զախաբար մրցանակը տանել ուզում... Մահալ քան իւր տէրն յանդուգն ու անվեհեր, վարժ ու սառնարիւն, նորա վերայ յարձակողներն վանեց ու իւր անձը պաշտպանելով դիւրացուց փախուստը։

Արապը կարծես ամեն ինչ զգում էր։ Ուշիմ կենդանին սմբակի տակ ջախջախեց շատ գլուխներ։ Անտարակոյս հերոսները չը գիտէին իրենց ինչ անելը, որչափ սպաննելը, վէրք ստանալները, միայն իրենք զիրենք յանկարծ բանակից դուրս գտան։ Հրացանների գնդակներ սուլելով անցնում էին նոցա մօտով, տէր և ծառայ վիրաւոր խոյս տուին դէպի Աւանը։

—Այլ վտանգ չը կայ, Տէր իմ,—ձայնեց լեռնականը երբ բաւական հեռացան ամբոխից, —կանգնի՛ր, կարծեմ վիրաւորուած ես...

—Վէ՛րք... է՛հ. իմ ուզած բանն է։

Գարեգին կանգնեցաւ. սկսեցին ակնապիշ, անձայն յետ նայիլ, ո՛չ... չը կային իրենց հետեւակ ընկերները... խորտակուած էր Արծրունու փոքրիկ բանակը...

—Նոքա՜... Մահա՜լ, չը կա՜ն, ի՞նչ եղան։

—Մեռա՜ն...

—Ո՛հ, շա՜տ անխոհեմ էր մեր ձեռնարկը...

—Գիտակ չէինք, Տէր իմ։ Որոշուած էր

խմբուիլ, լաւ պատրաստուիլ, ապա յարձակուիլ, ի դերև ելաւ այդ որոշում Թշնամու յանկարծական երևումից...

—Անտարակոյս գիտակ չէինք... խորհելու՛ էինք սակայն՝ Թէ այնտեղ մնալներս նպաստաւոր էր, քանի որ կազմ ու պատրաստ չէր մեր խումբը։

—Եթէ այնտեղ մնայինք, պիտի այրուէինք բոցերի մէջ...

—Ընդևիցէ... այժմ ի՞նչ անենք...

—Ես գիտե՞մ... եթէ կամենաս՝ դառնանք մեռնելու...

—Անօգուտ է մեր մահը,—քիչ խորհելից յետոյ,—ա՜հ... Մահալ, մի պարտք ունինք... աւելի փառաւոր վախճան վերապահուած է մեզ...

—Ապա՞... ի՞նչ պարտք...

—Այո՛, պարտ ենք գնալ Ալուր գիւղը, եթէ տակաւին ժամանած չեն Թշնամիք... մենք կարող ենք նոր խումբ կազմել, իսկ եթէ գնացած այրած, գերած են, մենք կարող ենք գերիների աչքին առաջ մեռնել քաջաբար։

—Միտքդ լաւ եմ իմանում... երթա՛նք...

Արայն սկսեց սլանալ։ Գարեգին մտադրաղ՝ Թոյլ տուեց որ նժոյգը գնայ, սակայն Մահալ չորս կողմերը մանրամասն քննելով

տեսնում էր Թշնամու հետքը, տեղ տեղ ընկած էին հայեր, տեղ տեղ ներկուած էին՝ արահետ, դաշտ մարդկային արիւնով։

—Ի՞նչ կարծես,—վերջապէս հարցուց Գարեգին մեքենապէս տեսածին հաւատալ չուզելով,—անօրէնները յԱլուր հասած են...

—Ինձ այնպէս է երևում.. որչափ կարելի է աճապարենք... կարծեմ մեր ետևիցն էլ մի խումբ կը գայ...

—Ա՛հ, այո,—յետ նայելով,—գալիս են մի քանի պարսիկներ...

—Ոչ թէ մի քանի, այլ մի քանի հարիւր...

—Լաւ ուրեմն, արա՛պ, հ՛ազի՛ր... կը գընանք Ալուր, Մահալ, եթէ թշնամին այնտեղ չէ հասած՝ կը գործենք...

Մահալը չը պատասխանեց, իւր Տիրոջ օրինակին հետևելով՝ խթեց իւր ձիու կողերին։

Կէս ժամ յետոյ երևում էր Ալուրը։

Նորան պարուրող կանաչագեղ այգիների թաւուտ գծերը, օղակները, շէնքերի լերկ տանիքը, եկեղեցին, ս. Գէորգայ լեռն ու վանքը ծածկուած էին մշուշանման ամպիկների կոհակներով։

—Մահա՛լ,—հարցուց Գարեգին այս պատկերը նշմարելիս,—ամպ չէ՞ արդեօք... ի՞նչ է սա...

—Ծուխ է, հոտը չէ՞ք առնում, Տէր իմ։

Արծրունին քաջ էր իմանում ծուխ լինելը, մակաբերում Ալուրի անկարեկիր վիճակը, բայց՝ չէր ուզում հաւատալ։ Մարդկայի հոգին այսպէս է կազմակերպուած։ Եթէ իւր սիրականին շուրջ գալարին դժոխք, հրանուտ ալիք զայն լափեն անյագ, նա չէ ուզում հաւատալ, նա չէ կարող երեւակայել թէ իւր սիրելին այրուած է մի ակնթարթում... միտքը հեռի է փախչում այդ ահռելի գաղափարից, որ սոսկալի իրականութեան տիպն է։ Գարեգին նշաններից որոշապէս տեսնում էր Ալուրի բախտը, բայց Նազենիկը դեռ անվտանգ, Ալուրը չէն ուզում էր հաւատալ...

Ալնուամենայնիւ՝ քանի յառաջանային, այնչափ կը բազմանային անմխիթար աւերածի հետքերը...

Տակաւ տակաւ վերանում, խուսափում, կամ անոսրանում է ծխային ամպը. տեսնում են Ալուրը իբրեւ մի հրեղէն լիճ։ Ճարճատում, կոտրտուելով այրւում են չոր ծառեր շէնքերի հետ, բոցերի սանձարձակ գետեր, հոսանուտ մարմնի նման սողոսկում են դէս ու դէն։ Ցիպանայ քամին արծարծում, ուժգին թեւ տալով ալեակներին՝ քարերն անգամ ազատ չեն մնում։

Է՛Հ… չեմ կարող նկարագրել ոչխարների, կովերի, գառների, հորթերի և այլ կենդանեաց ողորմագին բառաչն ու կոչիւնը, յուսահատ մարդկանց կականաբարձ աղաղակը…

Կարծես համած լինէր աշխարհի վախճանը։ Ոչ ոք չէր օգնում ընկերին, մայրը մանուկը մոռացած՝ աշխատում էր խոյս տալով զերծանել լափլիզող կրակից։ Որչափ հիւանդներ, պատկառաւոր անկարող անձինք, ծերեր, մանուկներ այրուելով թաղուեցան աճիւնների տակ, որչափ կենդանիներ գոմերի, փակաղների մէջ իրենց տէրերի բախտին բախտակից եղան… Այսօր իսկ, 350 տարի յետոյ, Ալուրցին այս արկածն յիշելով յուզւում, չէ կարողանում պատասխանել…

Գարեգին այս ամենն տեսաւ, տեսաւ հըրեղէն լիճը։ Մի րոպէ կանգ առաւ, որպէս կանգնում է Եփրատից անցնիլ ուզողը նորա հունը որոնելու։ Ապա՝ յանկարծ ուժգնակի խփելով երիվարի կողերին նետուեցաւ բոցերի մէջ. նոյնն արեց և Մահալ։

Բոցերը որչափ որ արտաքուստ ահեղ, հոգին հաւասար էին երևում, Գարեգնին ճանապարհ տուին, վանքի տանիքները գալարում, միմեանց միանում էին կրակէ բարունակ ձևացնելով, մինչդեռ միայն ծխով լեցուած, մի

տեսակ գործ ծովակի էին նմանում։

Ցանդուգն երիտասարդը Մահակի հետ համաւ Խոջա-Բալասի դուռը․ անտարակոյս պիտի ընկնէր այրուող տան մէջ, եթէ կիսովին քայքայուած չը լինէր բակը։ Ինքնաբերաբար աղաղակեց կանգնելով․

—Նազենի՛կ... Նազենի՛կ... Նազենի՛կ...

—Նազենի՛կ... Նմ... —արձագանքեց մի կիսաշէջ ձայն բոցերի միջից։ Գարեգին արձագանք կարծելով կրկնեց, սակայն՝ Մահալ ակնայեա բոցերին նայելով, ուշադիր լսողութիւնը լարած, սպասում էր երկրորդ պատասխանին, ինչպէս անում է որսկան բարակը անտառի մթամած ծմակների եան կանգնած։

—Նազենի՛կ... Նազենի՛կ... ո՞ւր ես դու, Նազենի՛կ...

—Նազենիկը... այստեղ չէ... օգնութի՛ւն... օգնու... Նազ...նիկ... ան...պատ գնաց... ի՛նձ... ինձ... օգնութի՛ւն...

—Դու ո՞վ ես...

—Բալ... ո՛հ... մեռա՛յ...

Երիտասարդը կրակի մէջ պիտի նետուէր, եթէ Մահալ չը բռնէր թևիցն ասելով․

—Նազենիկ անպատան է... իսկ Բալասը անկարելի է փրկել...

—Նա չէ՞ր խօսողը...

—Նա էր, անշուշտ ծանրապէս վիրաւոր... այժմ այրուեցաւ...

Դեռ Մահալ աւարտած չէր խօսքը, երբ մի խոշոր դղրդով տունը փուլ եկաւ. կայծերի, ամպաձոյլ ծխի և փոշու երերախառն մի հոսանք ծածկեց տեսարանն և մարեց հրկիզեալի ձայնն յաւիտեան։

---

„Երկի՛նք էի՛ն զօրաց կայա՛ն,
„Նաեւ դժոխք մի՛շտ պարտակա՛ն
„Ողոքա՛նօք հրաւէր կարդա՛մ,
„Եկայք ի յողբ Վասպուրական..."

Յով. Վ. Վարազացի

Ե

## ՍԻՐԱՀԱՐՆԵՐԸ ՏԱԳՆԱՊԻ ՄԷՋ

Բզնունեաց ծովակը շրջապատող քաղաքներ, շէներ, աւաններ, գիւղեր Ալուրի բախտին բախտակից, կողոպտուած, հրի, սրի մատնուած լինելով՝ ծխային ամպեր հեռաւոր ափունք ծովին, ծովն երկնից կցելով՝ մի անծայրածիր հորիզոն էին պարզում աչքի առաջ, որի մէջ տեղ տեղ օւասխոնների նման, դաշտերի բեկորներ, սուր ժայռերի կոներ, սարերի

արտևաններ, կարծես փախչում էին Հորիզոնն ի վեր... Հեռո՜ւ, Հեռո՜ւ և կորչում անեզրութեան ծոցերին մէջ...

Կտուց-Անապատի դաշտն ու դարաւանդը, կոնաձև ժայռը, որ Հեռուից վաղեմի բերդի քայքայուած աշտարակ է նմանում, ծածկուած էին մի յարաշարժ Հեղեղի անորոշ գոյներով։ Անցորդը որչափ մօտենար՝ այնչափ որոշ տեսնում էր գոյների, Հեղեղի ինչ լինելը։

Գարեգնի արապը սլանում էր սոլասմբակ, վանչելով պլլուած փոշեղէն ամպիկների մէջ։

—Հէ,—մենախօսում էր երիտասարդը,— այս էր իմ սէրը... էլ ի՜նչ յոյս, Նազենի՛կ, ոչ ևս է մեզ կեանք... եթէ ողջ անգամ լինիս՝ պիտի Հնազանդիմ Հայ-Հայրենեաց տխրանոյշ ձայնին, որ կոչում է, որ խնդրում է իւր իրաւունքը, իւր շնորՀած արիւնն ու կեանքը, քեզ պաշտող սիրտը... ո՛Հ... մերթ տեսնում եմ քեզ Թախծալի Հայրենի ծխացող տան աւերակներին, աճիւններին ներքոյ, մերթ խառնուած անապատն ապաստանած անտէրունչ օրիորդների, քաղածածուկ Հարսների խմբերին մէջ... մե՜րթ... մատնուած՝ դաժիր Պարսից լըլկանքին... Կը գամ անապատ, եթէ պարսկի ձեռը դիպած է քո ձեռին, նախ՝ քեզ, ապա՝ նորան կսպաննեմ, կը մեռնիմ քո մօտ, քո

դիակի մօտ, այսպէս կապացուցանեմ քեզ անհուն սիրով սիրելս, պաշտելի՛ աղջիկ... Նազենի՛կ, Նազենի՛կ, իմ մէջ ոչ մի բան չը կայ այժմ կերպարանաւորուած, ոչ մի էակ չէ երեւում մթամած սրտիս խորերը բացի քեզանից։

Մահա՛լ իւր տիրոջ տխուր լռութիւնն յարգելով՝ չէր խօսում։

Գարեգին երբ վերջին խօսքերը մրմռաց մի քիչ բարձր ձայնով, մոռանալով զինակրի ներկայութիւնը, տիրասէր լեռնականը ուշադիր դիտեց, ինչպէս կոյս մայրերը բուռն սիրով, նոյնպէս կորիճի աչերը լցուած էին արտասուքով։

—Իշխա՛ն,—դիտեց յուզմամբ,—դու լաց ես լինում...

—Այո՛, Մահա՛լ, այո՛, բարեկամս,—մրմընջեց Արծրունին դողդոջուն ձայնով իւր խօսքին մաղձային փափկութիւն տալով,—այո՛, լա՛ց եմ լինում։ Մահա՛լ, եթէ կարողանայիր սիրտս տեսնել, գուցէ և դու լաց լինէիր... Դադարած է իմ մէջ իշխող խորհուրդը, կարծես մըշտնջենական մի սառ մթութիւն ծրարած է նորան, չեմ յիշում ոչինչ, չեմ խորհում այս ու այն անել, միայն հոգեպիշ նայիլ մի պատկերի, նորա սիրարծարծ պատկերին՝ որ կանգնած է սրտիս մէջ՝ իբրև մենասէր բու հայրենի աւե-

րակաց, կործանուած, այրուած շէնքերի, գիւղերի և իմ էութեան վերայ կանգած։ Մի խօսքով իմ բոլոր ցաւեր, վիշտեր, յոյսեր, իղէալներ պատուանդան է արած իւր խուսափուկ ստուերին, իւր սիրանոյշ արձանին...

—Մի առ մի յաջորդաբար սահում, անցնում են մտքէս,—շարունակեց Գարեգին,— այն յիշատակները՝ որ ունեցել ենք ի միասին... Մահմ՛լ, նա սիրոյ, միայն սիրոյ համար էր ստեղծուած... իւր բոլոր պարզամտութեամբ, իւր բոլոր երկիւղներով, սիրագրաւ ամօթխածութեամբ ու սիրով օժտուած Նազենիկը աղջիկ չէր, այլ մի հրեշտակ... Որչափ որ մեծ էր սէրը նորա մէջ, նոյնչափ և մեծ էր պարկեշտութիւնը, ամօթոյ շառագոյն վարդերը բոլորած երեսին, դողդոջում էր, կարկամում էր, լալիս էր բազուկներիս մէջ ընկած ժամանակ... կրկին, կրկին երդում էր պահանջում... երդւում էի, երդւում էի յարգել պարկեշտութիւնն իւր բոլոր սրբազան պայմաններով... սպասել մինչև ս. պսակ... Նա համբոյրն անգամ զլանում էր ինձ...

Եթէ արապը չը կանգնէր, Գարեգին պիտի շարունակէր իւր յիշատակներից, յուզումներից։ Երբ հասկանալ ուզեց ձիու յանկարծ կանգնելու պատճառը, իւր առաջ տեսաւ մի կրօնաւոր։

—Իշխա՛ն,—հարցուց ծերուկը՝ խուլ ձայնով,—անապա՞տ կերթաք։

—Այո՛... Բալասի ընտանիքը այնտե՞ղ է...

—Այնտեղ են... միայն Խոջան, ասում են սպանուած է...

—Նորա կինը, հարսներ, աղջիկներ անվընա՞ս են։

—Այո՛, Տէր իմ, ողջ են, տեղերն էլ լաւ է։

—Շնորհակալ եմ, աբեղա՛յ, տուած տեղեկութիւններդ թանկագին են ինձ համար... Մահա՛լ, առաջարենք...

Ձիերն արշաւասոյր սլացան դէպի ծովափ։

Արդէն անցած էին անապատի դրսի տունը։ Ջը նշմարեցին հովուի գերեզմանը, Կուպաշտնոցի հովանկը՝ որովհետև Կտուց-Անապատը մի փառաւոր պատկեր էր ընծայում...

Արանց, կանանց խումբեր ճեմում էին կղզու դարաւանդին, դաշտակին վերայ և ահաբեկ նայում դէպի հարաւ-արևելք, Վան, որ ծածկուած էր գորշ ամպերով։

Կտուց-Անապատն արդէն փոքրիկ, անշէն կղզեակ մի էր, նորա մի ծայրը միայն ժայռերի մի քանի խոռոչներ իբրև խրճիթ և աղօթարան ծառայում էին բարեպաշտ միաբաններին։ Անտարակոյս հաղարաւոր փախստականներ պարփակելու անընդունակ, նեղ լինե-

լով՝ անպատսպար խմբեր դէս ու դէն երթալ գալով սպասում էին որոշ բախտին։

Այս պարագաները ծանօթ էին Արծրունուն, վասնորոյ մտքիցն անգամ չանցուց թէ ապահով են նոքա։

—Գարեգին,—դիտել տուեց Մահալ՝ երբ նա ուզում էր ձիուց ցած գալ, լողալով անցնել կղզին,—տես մի նեղ, բարակ հուն միացնում է կղզին մայր ցամաքի հետ, հազիւ մի մարդաչափ խորութիւն ունի ջուրը, հետեւապէս փորձենք ձիով անցնել։

—Փորձենք,—պատասխանեց երիտասարդը արաւն ի ծով մղելով։

Մինչդեռ սոքա ծովն էին իջնում, մի նոր իրարանցում ցնցում էր կղզին, մի ահագին աղաղակ ծաւալում ծովի բացերը։

Ալուր, Մարմէտ, Նռնաշէն կամ Տռնաշէն գիւղերի ժողովուրդը, մօտաւորապէս 6,000 մարդ, Կտուց-Անապատն ապաստանած, այլ և այլ խմբերի բաժանուած՝ ամեն կողմից դիտում էին ցամաքը և սպասում թշնամու գալստեան։ Երկու ձիաւորների երևումը բաւական մտահոգութիւն էր պատճառած, սակայն՝ ջուրը մտած առեններր ճանաչուելով՝ ցրուեցան նոցա բոլոր երկիւղները։

Տակաւին մասնական երկիւղը չը փարա-

տած, սարսափն հասաւ։ Կռապաշտնոցի հըրուանդանի ետևից դուրս եկան տասնի չափ նաւեր, որոնք ծովափունքից նաւարկելով հասած էին անդ բոլորովին անտեսանելի մնալով ակնկառոյց դիտողներից։

Կանանց խումբը գտնւում էր ս. Աստուածածնի տաճարին կողմերը, որոց ընկերանում էր երիտասարդութեան մի մասը։

Նաւերի երևելուն պէս՝ ժողովուրդը իրարանցումով գրաւեց որոշուած տեղերը, իսկ մանկահասակ հարսներ, օրիորդներ, պատանիներ խուճապեցին մտնել տաճար...

Հոգևորականաց կամ ճգնաւորաց դասը՝ փութաց ծովափ իբրև մի մեծ այցելու ընդունելու, որոց ընկերացան մելիքներ, խոջաներ և այլ պատուաւոր շինականներ։

Աննկարագրելի է այն ջղասարսուռ տագնապը, մահատիպ զարհուրանքը, կանանց կականաբարձ լացը, ահաբեկ իրարանցումը, սարսափը, որ տիրեցին թշնամու երևալուց յետոյ։

Տաճարը իրենց մեծ սրտերին նեղ գտնելով երկու գեղանիներ, ձեռքէ ձեռք բռնած դուրս եկան, բարձրացան նորան կից ժայռի գլուխը, աջ ու ձախ գաղտագողի նայելով՝ սկսեցին խօսել։

—Նանէ,—ասում էր մեր նախածանօթ Նազենիկը այլայլած աչերը շուրջ ածելով—Նանէ, աղջիկ, մոռացած ես երեսդ քօղարկել։

—Խե՜ղճ Նազենիկ,—պատասխանեց դեռահաս Նանէն հերոսական ժպիտով,—հարսնութիւնը ծրարեցինք։ Այս վատթար գազանները չը պիտի յարգեն ոչ քո կուսութիւնը, ոչ իմ հարսնութիւնը... ուրեմն ինչո՞ւ քօղարկեմ դէմքս։ Ա՜հ... Նազենիկ, եթէ յղի չը լինէի, եթէ այս անուշ էակը չը ննջէր սրտիս մէջ, ինչե՜ր պիտի չանէի... այր մարդուն օրինակ պիտի տայի՝ թէ պէտք չէ անգութին ոտքն ընկնել, գթութիւն հայցել, պէտք չէ անբարոյական պարսկին վերայ յոյս դնել, այլ զէնքին, դէմ կանգնել թշնամուն... Ասում են մեղք է մարդ սպաննելը՝ ասում են անքաւելի յանցանք է. բայց՝ ես, Նազենի՛կ, ես, եթէ դժոխքն իսկ երթալս գիտենայի, կ՚ընտրէի կռուել ու մեռնել... Տե՛ս, տե՛ս մեր ապաշնորհ երիտասարդութիւնը, նոքա որ մեր տէրերն են, այրերն ու եղբայրներն եմ ասում, մոլորուած ոչխարների նման, ժայռէ ժայռ յածելով պիտի տեսնեն շատ բաներ... բռնաբարութիւն պատւոյ, գերութիւն սիրելիների, մեր լացն ու կոծը, սակայն՝ ձեռները ծոցերին, վզները ճկած, անվստահ, երկչոտ, աչքի ծայ-

րով պիտի նային, պիտի լռեն, պիտի մնան խբրև այս ժայռերը զարդարող արձաններ։ Ե՜հ... իմ միտքը դու լաւ գիտես, Նազենի՛կ, ես երբէք չը պիտի տեսնեմ պատիւս ոտքիս տակ, չը պիտի ընդունիմ գերութեան, ստրկութեան անողոք շղթան իմ և դեռ արև չի տեսած վարդիս, զաւակիս վզին... ո՜հ... այո՛, իմ արդանդի անգին գանձով, երկու կեանքով պիտի ընկնիմ ծովը... պիտի մեռնիմ գիտակցաբար առանց ամօթոյ նշաւակ լինելու...

—Եւ ես, Նանէ ջա՛ն...

Հայ-հարսը՛ խորին յուզմամբ համբուրեց իւր տալի գունատ թշերն ու շրթունքը՝ արտասուելով։ Գեղանիները իրար պատատուած մի զոյգ վարդերի պէս՝ մնացին միմեանց գրկերի մէջ երկու րոպէ, ծծեցին միմեանց արտասուք՝ կրից վերին ուժգնութեամբ, այնպիսի սիրով՝ ուր ունի և իւր ներկայացուցիչը այր մարդու յիշատակը...

—Նազենի՛կ,—յարեց հարսնուկը զայն գրկին մէջ սեղմած.—մի՛ վախիր մահից, մի՛ զարհուրիր ջրաշէն գերեզմանից... ահաւոր ծովից և նորա անկուշտ ալիքներից... Նազենի՛կ, թող պաղ, աղի լեղի կոհակներ գրկեն մեզ, շոյեն, գգուեն, դէս ու դէն մղեն մեր անշունչ դիերը... ո՜հ... Նազենի՛կ, նոքա ինձ սարսուռ չը

պիտի ազդեն։ Երևակայի՜ր, եթէ կենդանի մը-նանք, ընկնինք պարսկի ձեռը, որ ոչ մեր երեսի շնորհը, ոչ պատիւը, ոչ գեղը, ոչ սրտի ազնուութիւնը կարող է ըմբռնել, պիտի վարէ մեզ անարգ անասնոց նման ի գերութիւն... վաճառէ, կամ իւր հաճոյքին գործածէ...

—Ո՛հ... կը սարսափիմ... շատ ճշմարիտ է... այո... մեռնի՜նք...

—Վերջապէ՜ս... մեր միակ ապաստանի, անմատչելի պատսպարան,՝ բիրտ այս գայլրագոչ ծովակն է, Նազենի՛կ... ուրեմն՝ երդուի՛ր ինձ հետևիլ, երդուի՛ր ինձ հետ թաղուիլ նորա խորքերին մէջ...

—Նանէ՛, դու ճանաչում ես ինձ... ես որ սիրում եմ Նոլյան, ես՝ որ պաշտում եմ նորան, կարո՞ղ եմ կենդանի մնալով չարաչար խայտառակուիլ... Նանէ՛, Վանից եկողներ... աւա՜ղ, դուժեցին նորա մահը... ոչ ևս է Գարեգին... ասում են, ս. Նշանի դրան առաջ, սուր ի ձեռին ընկած է... ես էլ ո՞ւր համար ապրիմ, որի՞ն հրապուրեմ իմ աննման բարեմասնութիւններով... Գիտցի՛ր, Նանէ՛, ես այժմ մահին եմ վազում, մահը ծոցս առած դերեզմանին եմ դիմում, ուր պիտի գտնեմ հոգւոյս վարդը թերթակոտոր թառամած... ուր պիտի գտնեմ արիւնոտ վերարկուի մէջ պլլուած,

*անկենդան ինկած Գարեգինն յաւիտենից յուսով, հերոսական փառքով…*

*Վերստին լճացան մրայօն օրիորդի աչերը, յուզումը մարեց Նորա ձայնը կոկորդին մէջ տխուր հեծեծանոց վերածելով, երեսը ձեռներին մէջ ծածկեց, մինչդեռ մատների կամարների գծերից ոլոռն ոլոռն թորում էին արտասուք։*

*Նանէ գլուխը շուռ տուեց չորս կողմը դիտելու, կամ չը տեսնելու Նազենիկի սրտաշարժ պատկերը, գուցէ զսպելու և իւր յուզումը, որ եռ էր գալիս սիրոյ համար ստեղծուած, դիւցազնութեան սահմանուած աննկուն, կորովի հոգւոյն խորը։ Այս միջոցին Նորա աչերը տեսան այն խուճապալի իրարանցումը, լսեց ապիկար արանց անյարմար վայնասունը, որք իրենք զիրենք կոծելով, երկչոտ այծեամների պէս փախչում էին դէս ու դէն բոլորովին շուարած, զարհուրած, ահաբեկ…*

„Իբրեւ զարջար գերի վարին
„Հարս եւ աղջիկ, անհնարին
„Տառապանաց մատնեալ, աւա՜ղ,
„Լալեօք թանան զդաշտն օտարին...
„Վերջին նուագ մահուն մատնեալ
„Այրն ի հեռուստ դիտէ զիւր կին,
„Կամ յուսագեղ դստերք Հայոց
„Ջանձինս իւրեանց մատնեն ծովին...
„Լերինք, բլուրք Ասքանազեան,
„Ընդ իս լացէք վանդոսպ ու Վան..."

Յով. Վ. Վարագացի.

2

## ՆԱԶԵՆԻԿ ԵՒ ՆԱՆԷ

Թահմազ-Կուլի Վան, Լէզք, Աւանց և այլն քարուքանդ արած, հետապնդեց փախստականներին։ Նորա ահագին բանակը բաժանուեցաւ մի քանի որոշ մասերի։ Հրոսախմբեր սկսեցին վազել իրենց վիճակուած ծանօթ վայրեր։

Շահի հրամանը բացայայտ է, ուր որ հայերի հանդիպէին, պարտական էին անխնայ կոտորել ծերերն ու անկարողներն, այրել տները, գերի վարել մանկահասակները առանց սեռի խտրութեան։

Նոքա լաւ ծանօթ Հայոց կեանքին, սովորութիւններին, գիտէին՝ որ հազարներով պիտի ապաստանէին կղզիների մէջ։

Քէրիմ-Խան, որ Քիրմանի իշխանն և արքայից արքայի աջ բազուկն էր, մի քանի հազար մարդով Աւանցոց անտէր նաւերը գրաւեց, մօտաւորապէս 150-ի չափ, նոցա մէջ իւր գունդը տեղաւորելով, մի մասն ուղարկեց Աղթամար, Առ-Տէր, միւս մասն ինքն առած յառաջացաւ դէպի Կտուց-Անապատ։

Հազիւ թէ Քէրիմի նաւախումբը երևեց հեռուից, որ վայնասունը դողացուց անապատի ապառաժները։ Պարսիկք որսորդի ուրախութեամբ նաւեցին և խարիսխ ձգեցին կղզու հարաւ-արևելեան ափափայից առաջ։

Փոխանակ դիմադրութեան հանդիպելու՝ ընդունուեցան անազնիւ հիւրերը անապատական ս. Հայրերից մեծարանաց, յարգանաց բատրուկ ցոյցերով... Վանահայրը, վարդապետներ եկեղեցական հին, անպէտ զգեստներ հագած՝ հասարակ մետաղեայ խաչ, անզարդ աւետա-

բաններ ձեռներին՝ երգելով դիմաւորեցին Քէրիմ-Խանին։

Բռնաւորն ևս իւր քմահաճոյքներն ունի, գիտակցաբար ծռում է գոռոզ գլուխը շողոքորդի առաջ։ Խանը մեղմելով իւր սրտի և և դէմքի դաժանութիւնն՝ շնորհակալ եղաւ աբեղաներից։ Չը մոռանանք ասել բաւականաչափ շինականներ իբրև եկեղեցական խառնուելով յարգոյ հարց խմբին՝ մի ստուար բազմութիւն էին դարձած։

Խանը ցամաք ելնելուն պէս՝ ժպտելով ասաց.

—Շնորհակալ եմ ձեր ընդունելութիւնից...

—Մեր պարտականութիւնն է,—իսկոյն խօսքը խլեց մի ճարպիկ աբեղայ՝ որի լրջութիւն զգեցած դէմքը վարպետօրէն ծածկում էր միմոսական հեգնութիւնն,—մեր պարտականութիւնն է խորին յարգանօք ընդունիլ մեծ Արքայի, Արեգակնափայլ Շահի մեծ խանին, որ անշուշտ մեծ բարիք է բերում իւր ոտքով այս աղքատ վանքին, որի միաբան կրօնաւորները միշտ աղօթում են Արքայից-Արքայի կենաց երկարութեան, միշտ յաղթական մնալուն համար...

—Անտարակոյս...—ժպտելով յարեց խանը,—գիտէք՝ որ Արքայից-Արքայն իբրև հի-

նաւուրց Տէր և թագաւոր Հայաստանի, չի՛ ների՝ որ կեղտոտ տաճիկների ձեռին մնաք... Ներզուիք նոցանից, նոքա օգտուէին իւր աշխատաւէր Հայերից... Վասն որոյ արշաւեց տաճկին վերայ զինու զօրութեամբ գրաւելու իւր հին կալուածները, իւր օգտակար ժողովուրդը... Արդ, Արքայից-Արքայի հրամանն է այս. «Սիրով ընդունել հնազանդողներին, զինուք պատժել դիմադրողներին, ապա կարաւան կազմելով իւր բարի հայերին տանել Պարսկաստան...»

Մի ցուրտ սարսափ դողացուց Հայոց ժողովրդի սիրտը. արձանացած մնացին՝ Պարսկաստան գնալու բօթը լսելիս։

—Մեծ-Խա՛ն,—յանդգնեցաւ Քէրիմի ատները համբուրելով պատասխանել խօսք բացող աբեղան,—չեմ կարող երևակայել թէ Արեգակնափայլ Շահը, կամ դուք, որ շատ վեհ, ազնիւ իշխան էք, կամենաք ուզորմելի ժողովուրդը սարէ սար, քարէ քար քաշ տալ... իբրև ոչխար քշել մինչև Պարսկաստանի խորերը...

Քէրիմի վէս, ամբարտաւան, արևակէզ դէմքի վերայ ցոլաց ու շեղաւ յագեցած վրիժու ժպիտը, շուրջ ածելով սև ու սուր աչերը, ակնարկով մի հրաման արձակեց։ Մինչ-

դեռ զօրքը խումբ խումբ սկսեց ցրուել, ինքն աբեղային դառնալով՝

—Միայն ձեզ,—պատասխանեց սառն ձայնով,—միայն աբեղաներիդ թոյլ կըտամ բնակել այս կղզում և աղօթել Արեգակնափայլ Տաճի կենաց... ժողովուրդը պիտի երթայ Պարսկաստան...

Նորա հրամանը ամենայն անգթութեամբ սկսեց զօրքը իրագործել։ Կղզու չորս կողմերը տարածուեցան սուրը ձեռներին, դիմադրողներին կոտորելով՝ մնացածները ժողովեցին ի միասին։

Քերիմ իւր խօսքը յարգեց, կրօնաւորներ ու կղերական վերարկու կրողները միայն ազատուեցան գերեվարութիւնից։ Այնուամենայնիւ՝ քարայր տաճարն ևս խուժելով, դուրս հանեցին այնտեղից կանանց և պատանեկաց խումբերը։

Չը պիտի փորձենք պատկերացնել աղեխարշ տեսարանը, չը պիտի ուրուագծենք պարսկին անգթութիւնը, որովհետև ընթերցողը ամենից աւելի ծանօթ է և գիտակ, երբև Հայ, իւր հայրենեաց ճակատագրին, նա կարդացած է հազարաւոր գերեվարութեան պատկերներ։ Լաց, կոծ, յուսահատ աղաղակներ, սպանութիւններ և այլն, նա շատ է լսած և շատ

լացած անմխիթար աւերածների վերայ։

Նանէ և Նազենիկ բարձրացած քարաժայռի գլխին, որպէս տեսանք, խօսում և սպասում էին վճռական ժամուն։ Անշուշտ չէին կարող երևակայել թէ՝ դեռ գերիները ճանապարհ չը հանած, Օսմանցոց փաշաները պիտի հանէին և խլէին ժողովուրդը Շահի ձեռքից։

Սկեպտիկեան ոգին խորթ է Հայ ժողովրդին. Հայ անհատ, Հայ ընտանիք, Հայ ազգ կանգուն եղել են և են սուրբ զգացումներով, օրինակելի ուղղախոհութեամբ՝ որի մասին օտար գիտնականք հիանալով են խօսում։ Հայի մէջ ստէպ կիրքերը խոհականութեան, սէրը հաստողութեան և կամքի պաշտօններն են կատարած։

Ո՞ր Հայ աղջիկ նկարագրել է իւր սրտի լափլիզող կրակն ու բոցը, սէրը. Հայ կտրիճը պատմո՞ւմ է իւր սիրասուն նշանածին այն վարդագեղ խոհերն ու երազները, որ պատրաստած է նուիրելու իւր կաթոգին սիրած ամուսնին՝ նախ քան հնչելն ամուսնական ժամուն...

Որչափ պիտի երանէր Արծրունին ինք զինք՝ եթէ Նազենիկ իւր անհուն սիրոյն մի փոքր մասն յայտնէր։ Երբէք խօսած չէր սիրոյ մասին, այլ աչքերը արտօսրալի, վախկոտ, դո-

ղահսր, գողդոջիւն, անձնատուր եղած կարիճի բազուկներին։ Այժմ լալով սև դոյժը, այժմ կիսովին հաւատալով թէ՝ Գարեգին ինկած է Ս. Նշանի դրան առաջ հերոսական վէրքով, տեսնելով միւս կողմից պարսկին արարքը, վերջապէս՝ որոշեց հետևել իւր մենտորուհուն, Նանէին՝ որ իւր ընկերուհին և սրտակապ բարեկամուհին էր եղած մտախոհութեան, տրտմութեան օրերին մէջ։

—Այս շները,—ասում էր առաքինի հարսը,—այս անօթի կեղտոտները, Նազենի՛կ, տարածուեցան բոլոր կղզում... ահաւասի՛կ, հաւաքում են բոլոր եղողներին... գերութի՛ւն... վա՜հ, վա՜յ մեզ...

—Նանէ՛, Նանէ՛, ժամ առաջ իրագործենք մեր յառաջադրութիւնը, հիմայ՝ կարգը մերն է... հիմա զօրքը մեզ մօտ կը հասնին... օ՜ն, մի՛ երեբիր, նետուինք, նետուինք ծովը...ո՜հ... Աստուած իմ, յաջողի՛ր, մի՛ ձգիր մեզ նրանց ձեռը...

—Սպասի՛ր, Նազենի՛կ, դեռ գործ ունիմ, ուզում եմ վերջին անգամ տեսնել իմ սիրած տղամարդը, եղբա՜յրդ...

Նազենիկի աչերը իսկոյն լցուեցան, գաղափարների զուգորդութեամբ անմիջապէս յիշեց և իւր սիրած Արծրունիին...

—Նանէ՜, երանի՜ քեզ, մրմնջեց նա հե-

ծեծելով,—երանի՜ քեզ՝ որ մեռնում ես նորանից առաջ։ Ի՞նչ անեմ ես. ոչ ևս է նա, թէև սիրտս չէ կարող հաւատալ, բայց… ասում են… եթէ ապրէր՝ կը գար անապատ…

—Հոգ չէ, Նազենի՛կ, մի՛ լար, մենք նորան պիտի գտնենք երկնքում…

—Ո՜հ, Նանէ, աչքիս առաջն է նա, հոգւոյս մէջն է նա, երբ յանկարծ յիշում եմ թէ մեռած է, մի անհուն սարսափ, սառնութիւն պաշարում է ինձ, սիրտս լալիս է իւր խորերին մէջ… ա՜հ, Գարեգի՛ն, Գարեգի՛ն, ինչո՞ւ ես քեզանից առաջ չը մեռայ, ինչո՞ւ ինձ սիրեցիր… մի՞թէ յաւէտ ողբացնել էիր ուզում քեզ պաշտող աղջկը…

—Նազենի՛կ, մի՛ լար՝ ասում եմ, ուրախ չե՞ս, հպարտ չե՞ս այնպիսի մեծ հերոսի նշանածը լինելուդ, մի՞թէ փառքդ չէ կազմում մի օրուայ այրիութեան սև քօղը… թող լան նոքա, որոց սիրածները մորթում են ոչխարի պէս առանց դիմադրութեան, այլ բառաչ ածելով միայն ուզում են իրենց անզօր պարանոցից թոթափել պողպատայի սուր սայրը։

—Ափսո՜ս. միայն այդ վսեմ հպարտութիւնն ինձ մխիթարում է, Նանէ։

—Նազենի՛կ… տես, տե՛ս այս խումբը… դէպի մեզ կը գան…

Արդարեւ՝ մի խումբ պարո՛նկ դիմում էին այն ժայռը, ուր կանգնած էին Հարս ու տալ։

—Նազենի՛կ,—ձայնեց արի մանկամարդուհին՝ տեսնելով թշնամեաց հայածեալով մերձենալը,—ձեռդ ինձ տո՛ւր, խաչակնքի՛ր երեսդ, աղօթի՛ր վերջին անգամ, մի՛ դողար... արիացի՛ր...

Քաջուհիները խաչակնքեցին երեսները, վերջին անգամ շուրջերը նայեցին, առանց նշմարելու թշնամեաց հակառակ կողմից հեւ 'ի հեւ եկող Գարեգինն ու Մահալը, իրար ձեռք բռնած մի րոպէ եւս սպասեցին մինչ կը մերձենար պարոնիկը, բայց՝ այս րոպէն հարստահարուած մի ազգի անցուցած երկու դարերի հոմանիշ էին իրենց դանդաղութեամբ։

Աննկարագրելի է նոցա հոգեկան վիճակը։ Մեռած էր ամեն զգացում. բացի սէրից, բացի անձնասիրութիւնից, որք մաքնիսի նման քարշում էին նորանց դէպի կեանքը, դէպի աշխարհը, սակայն՝ հաստատուն կամքի զօրութեան առաջ նուաճուած այդ բոլորը, տեղի տալին զարհուրելի որոշման։ Դադարած է իմացականութեան իշխող խորհուրդը, միայն կեանքի ամբողջ անցեալը զարհուրելի արագութեամբ կենդանի պատկերների պէս տռոյթ տալով խուսափում էին հեռի, իբրեւ

առաջօք տեսիլ՝ ենթակայք բոլոր սիրանուշ յի-շատակները արձանացած էին աչքին դէմ...

—Մօտենում են, Նազենիկ...

—Օ՛ն, Նանէ... ո՛հ, Գարեգին, Գարե-գի՛ն... ահա՛ գալիս եմ քեզ...

—Նազենի՛կ, Նանէ՛, սպասեցէք,—ձայնեց Գարեգին։

—Օ՛ն, նետուի՛նք...

—Սպասեցէք...

—Գարեգի՛ն, մեռնում եմ քո սիրով...

—Նանէ, սպասի՛ր, Նանէ...

Ի զուր էր աղաղակում Գարեգին դէպի ժայռը սլանալով։ Նոքա չը լսեցին երկտասար-դի՛ աղաղակը։ Պարսիկները զարհուրեցան, երբ դիւցազնուհիք ձեռքէ ձեռք բռնած իջան ծովի անդունդը։ Ոչ նուազ զարմացին երբ մի երրորդ, մի այլ մարդ, մի Հայ մարդ, Գարե-գինը՝ նոյն րոպէին ժայռի գլխից ինք զինք գլորեց ալիքների ծոցը, ճիշտ նոցա ընկած տեղը։ Այս ամէնը կատարուեցաւ հազիւ եր-կու րոպէի մէջ։

Հինգ րոպէից յետոյ՝ վերջին անձը երեւ-ցաւ ջրին երեսը, մի ձեռով պինդ բռնած ծո-վամոյն կիների մազերից։

—Օգնեցէք,—հրամայեց Քէրիմ, որ եկած էր ժայռի գլուխը։

Պարսիկ զօրականք կատարեցին իրենց տիրոջ հրամանը, անմիջապէս դուրս հանելով փրկիչն ու փրկեալները։

Բարբարոսն անգամ յարգում է մահուան ուրուականը, Նորա սրտի անյողդողդ ծնկները գէթ մի բոպէ դողահար խոնարհում են արտաքոյ իր կամաց պատահած մահուան առաջ։

Փրկիչն անվնաս էր, սակայն մեռած էին միւսները։

—Նանէ՜,—լաց էր լինում երիտասարդը,— Նանէ, յարգեցիր խոստումդ, չուզեցիր սրտիս շուշանը, հոգւոյս վարդը մատնել անդաւրժելի խորշակին։ Դժուացգնաբար նայեցիք կեանքի վերայ... Նազենի՜կ... ե՞ս եմ... Գարեգինն եմ... վերջին անգամ բա՛ց աչերդ՝ սիրակա՛ն, վերջին համբոյրդ տո՛ւր, գնա՛ դէպի երկինք, դէպի կեանք։

—Արժանապէս մեռան, Տէր ի՛մ,—դիտեց Մահալ՝ Արծրունին դիակներից հեռացնելով.— Նեղը մնալով իրենք զիրենք ծովին յանձնեցին, թո՛ղ ուրեմն... ուրախացիր՝ որ Նազենիկի պէս աննման աղջիկը սիրած ես և սիրուած նորանից... միթէ չը պիտո՞ւ ուզէիր և դու նորա մահը՝ գերութիւնը նշմարելով...

—Ո՞հ... պիտի սպանէի արդէն... բայց չը գիտեմ թէ որպիսի բնազդմամբ ծով նետուեցայ, փրկեցի նորանց...

—Ուրեմն մի՛ լար, նա իր արիական մահով փառաւորեց անունդ և սէրդ դիւցազնական ողբադրոշմով։

Դիակները միմեանց մօտ դրին, Գարեգին ծնրադիր, աւելի հոգւով քան աչքով լացեց և մտքով գովեց Նազենիկի և Նանէի մահը։

Քէրիմ-Խան չը միջամտեց, թոյլ տուեց կըտրիճին լալու։

Երբ գերիները հաւաքեցին միատեղ, զօրականք զգացուցին Խանին, թէ պէտք էր երթալ, նա՝ Գարեգնին մօտենալով.

—Երիտասա՛րդ, հարցուց,—սոքա քո ի՞նչն են...

—Մինն՝ իմ նշանածս, իսկ միւսը՝ նորա հարսն է։

—Լաւ ուրեմն, ինչո՞ւ ես լաց լինում... նոքա մեռան... ափսոս չէ՞ քեզ պէս տղամարդին լալ ու ողբալ... եթէ ընդունես մեր սուրբ ղինը (դէն)՝ քեզ կը տամ աւելի սիրուն և ազնուական կիներ։

Գարեգին ամփոփեց ինքզինք, փոփոխակի նայեց Մահալին և Խանին, գունատեցաւ... զարմանալի արագութեամբ նայեց և վերջին անգամ դիակներին, քաջուհիներին՝ որ անթաղ պիտի մնային ըստ օրէնի իբրև անձնասպան, կամ թաղուէին առանց արարողութեան գե-

բեզմաններից հեռի, ապա դողդոջուն ձայնով՝

—Խա՛ն,—մրմռաց,—ես արդէն մտադրած էի ընդունիլ ձեր դէնը և մտնել Տաճի զօրքին մէջ... այո՛, ընդունում եմ...

—Գիտէ՛ք, Խա՛ն,—ընդմիջեց բանագէտ Մահալը,—իմ Տէրը հասարակ մարդ չէ, Ամկայ թագաւորի թոռն է...

—Ստո՞յգ...

—Այո՛, Ամկայ թագաւորի թոռն է սա՝ իսկ ես նորա ծառան...

Խանը խորին հրճուանքով Արծրունիին սեղմեց իւր կրծքին վերայ, նորա ճակատը համբուրեց ասելով.

—Արքայից Արքայի փառաւոր անունով, երիտասա՛րդ, այժմ քեզ եմ տալիս իշխան (խան) տիտղոսը... դու խան կը լինիս և առաջինն արքունիքի մէջ...

—Ձեր շնորհիւ... ազնիւ խան...

—Երթա՛նք...

Մահալ և Գարեգին հետևեցան Խանին։

Շրջապատող Հայեր սրտով սկսեցին անիծել Արծրունիին, որ ուրացաւ իւր կրօնն ու ազգութիւնը անցաւոր փառքի համար։

---

## Է

## ԽԱՆ—ՄԻՐԱՆ

1555 Թուականին՝ պարսից արքունիքն ենք։ Ճոխ և զարդարուն ահագին սենեակի մի անկիւնը, շքեղ բազմոցի վերայ, ծալապատիկ նստած է մի հալումաշ ծերունի. Նորա պերճ հագուստը, ոսկէ ադամանդակուռ կամարը, սամոյրը՝ որ իրենց մէջ են ծրարում վտիտ ծերունու ծանր գլուխն ու հասակը, յայտնի ապացոյց են թէ՝ նոյն ինքն արքայից արքայն, Թահմազ-Կուլի Շահն է, որ իւր յիսնամեայ թագաւորութեան ընթացքում արեամբ ողողեց անտէրունջ Հայաստանը։

Նա ծխում է կալիոնը մտախոհ կերպով և հազիւ ուրեմն շունչ առնում, Շահի դէմ ծըն-րադիր, ակնկոր, լուռ ու մունջ բազմած է մի քառասնամեայ հաստակազմ, վայելուչ մարդ, որի խոժոռ դէմքը ամենայն լրջութեամբ պարփակում է ծանր վշտեր։ Միայն կլկլակի ներդաշնակ խուխուոցն է լսւում։ Չէ խօսում

Շահը և չէ խօսում մեծ վէզիրը։ Այսպէս լըռին սահում է մի ժամ, մինչև որ արքայն վերջացնում է ծխելն՝ ասելով.

—Խան-Միրա՛ն, կորել է բերանիս համը, կլկլակն անգամ ինձ գառն է թւում, է՜հ... Թահմազ-Կուլին, աշխարհասասաստ Արքայից Արքայն էլ վշտեր ունի...

—Տէր իմ, առանց վշտերի մարդ չըկայ...

—Այնպէս է, Խա՛ն, սակայն՝ ոչ մինի վիշտը հաւասար է իմ վշտերին... միմեանց ետևից հինգ, վեց զաւակներ, թոռներ կորուցի... ընտիր նախարարներ, զօրավարներ զոհուեցան մի անծանօթ չարագործի։ Հարեմի մէջն էլ միևնոյն սխտը տարածուած, կոտորում է սիրուն հայուհիներին... Ես Թահմասպ-Շահս, տեսնում եմ այս ամենը և ոչինչ կարող եմ անել, վէզիրդ իմ, տկար, անզօր եմ իմ բոլոր զօրութեամբ մի անծանօթ չարագործի դէմ... որ ծածուկ թունաւորում է իմ բոլոր սիրելիներին... այո՛, զրկուեց Պարսկաստանը իւր արժանի թագաժառանգից, իւր անվախ զօրավարներից, ոչ ևս են Քիրմանի-Քէրիմ խան, Մանկու-Խան, Իզէտ-Խան...

Այս անունները արտասանելիս Թահմազ-Կուլի, չը նշմարելով Խան-Միրանի դէմաց այլայլութիւնը՝ յարեց.

—Խա՛ն, երդւում եմ Ալլահի վերայ, եթէ ձեռք ընկնի այդ չարագործը՝ պիտի տուժէ դառն չարչարանքով։

—Տուժելու է,—մրմռաց Խան-Միրան, առանց արքային նայելու, աւելի մտախոհ՝ քան լուրջ։

—Ո՛հ,—շարունակեց ծերունին այլայլած, յուզուած,—ո՛հ, քանի աչքիս առաջ գան արքայազանց սոսկալի մահերը, քանի յիշեմ զօրավարներս, Խա՛ն, սողում է իմ մէջ վրիժուպապակած ծարաւը... բարկութեան լափիչ կըրակն ու բոցը։

—Իրաւունք ունի Արեգակնափայլ Արքայից Արքայն...

—Երևի,—դողդոջուն ձայնով ասաց Թահմազ-Կուլի,—երևի չարագործը՝ ով որ է, երդւուած է ինձ դէմ...

—Երևի...

—Լաւ ուրեմն... ես նորան ողջ չեմ թողնի...

Խան-Միրան չը պատասխանեց։

—Ո՛հ... Խա՛ն, զարհուրելի բան է սիրականի մահը տեսնել...

—Այո՛... շատ զարհուրելի...

—Շա՛տ եմ ցաւում այն Հայ-աղջկան, Ֆիտոշին վերայ...

Սիրտս կտոր կտոր եղաւ, երբ նորա ողբալի մահը տեսայ։

—Արեգակնափայլ Տէր,—յուզմամբ հարցուց Խանը,—միթէ Տէրս չը գիտէ՞ թէ ամեն մարդ իւր ցանածը պիտի քաղէ...

—Լա՛ւ... ի՞նչ ասել կամենաք...

—Այս եմ ուզում ասել թէ՝ Տէրս տեսած չէ՞ր արդեօք ուրիշ հոգեվարքներ, մարդիկ, կոյս աղջիկներ, պատանիներ, ծերեր և պառաւներ... Տեսած չէ՞ք, Տէր արքայ, Ցիտոշին նման մանկամարդուհիներ՝ ոչ թէ մահճի վերայ, այլ սրի տակ, արեան մէջ, տեսած չէ՞ք ձեր արքայազուն որդւոց հաւասա՛ր անձեր ձիերի ոտներին տակ ջախջախուած, տեսած չէ՞ք անձնասպաններ, որք չեն կամեցել անձնատուր լինել յաղթողին... Եթէ թոյլ կը տայ արքայից արքայն՝ ես կը պատմեմ նորան...

—Խօսի՛ր, Խան-Միրա՛ն, խօսի՛ր, լսում եմ քեզ...

Խան-Միրան ուշադիր զննում էր թագաւորի դէմքը և յաջորդաբար, նորա փոփոխութեան համեմատ՝ խօսում։

Թահմազ-Կուլի թէպէտ ծեր, վատոյժ, անուամենայնիւ՝ նորա վայրագ աչերը տակաւին պահում էին կենդանութեան նշոյլները. այդ օր միայն՝ հետզհետէ կարծես մարում, շիջե-

լավառ կանթեղի պատրույկի պէս առկայծում էին մարելու մօտ։ Այս ամենը չէին վրիպում Խանի աչքից, վասնորոյ՝ ժամը հնչած կարծե-լով սկսեց խօսիլ։

—Տէր Արքայ, խօսելիքս մասամբ նոր չէ, որովհետև՝ նորա մի մասը ինձանից լաւ է ի-մանում Թագաւորս։ Յիշո՞ւմ էք, Տէր արքայ ձեր քսան տարի առաջ կատարած Վանայ ար-շաւանքը։

—Անտարակոյս՝ շատ լաւ եմ յիշում... Ա՜խ. երանի այն օրերին...

—Այո... այո, երանի՜ այն օրերին...

—Ապա՞...

—Յիշո՞ւմ էք... քաղաքն այրուած, Թաղե-րը պաշարուած, տուն, կրպակ կողոպտում էին Արքայից Արքայի զօրքը, աւարի առատութեամբ յղբացած՝ իրենք իրենց վերին փառաւորու-թեան հասած նկատում... ընչաքաղցութիւնն և այլ մոլութեանց նման չի յագենում... Ձեր Արքայական զօրքը՝ եղած աւարը ոչինչ համա-րելով՝ դիմեց Հայոց Մայր-Եկեղեցին, Ս. Նշա-նը...

—Ապա՜ր... կա՛ց, յիշում եմ. Մակուայ Ալի-Խանի առաջնորդութեամբ կատարուեցաւ այդ բանը...

—Ճշմարիտ է...

—Ալի-Խան ճակատից զարնուեցաւ։

—Սուտ է...

—Լաւ յիշողութիւն ունիս, Խան-Միրան։

—Ս. Նշանի մէջ ապաստանած մի բուռն քաջեր ոչ միայն փրկեցին նորա հարստութիւնը, այլև շեշտակի յարձակուելով ճեղքեցին արքայից արքայի բանակը, անցան նորա պղտոր հոսանքից։

—Բայց կարծեմ... վեցը բռնուեցան, ես կախեցի նորանց...

—Այո՛, վեցին կախեցիք, բայց ո՛չ բոլորը։

—Ճշմարիտ է... միւսները փախան, ազատուեցան...

—Լաւ, յիշո՞ւմ է Տէրս, թէ ինչպիսի անգթութեամբ քաղաքում գտնուած ժողովուրդը սրակոտոր արաւ, որոց մէջ կային հազարաւոր ընտիր երիտասարդներ, պատանիներ, հարսներ և օրիորդներ... նման ձեր արքայազանց... Թիտոշին...

—Ի՞նչ ասել կամենաս, Խա՛ն,—հարցուց թագաւորը բնազդական յանկարծական սասռուռով, ծանրապէս իւր աչաց անորոշ բիբերը Խանի լուսացայտ աչերին սևեռած։

—Պիտի լսէ Տէրս իմ խօսքը...

—Շարունակի՛ր...

—Յիշո՞ւմ էք Կտուց-Անապատի գերիների

խումբը, Քէրիմ-Խանի արարքը և իմ արարքը... Յիշո՞ւմ էք թէ որպիսի հանգամանքների բեռան տակ ճնշուած՝ Գուրգէն Արծրունին, Ամկայ թագաւորի որդին, իւր Մահալ սպասաւորով միասին, ուրացաւ իւր կրօնը... ազգը եղաւ մահմէտական, եղաւ Խան-Միրան և մեծ վէզիր... որը այս ժամուս զբօսեցնում է իւր օրհասական թագաւորին... Խան-Միրան Արծրունի եղած ժամանակ որոշած էր Հայ-ժողովուրդը ոտքի հանել, չը յաջողեցաւ։ Դու արշաւելով Վասպուրական ջլատեցիր իմ ուժերը, ոչնչացրիր իմ յառաջադրած ծրագիրը։ Մարդուս ամենամեծ թշնամին լինում է նորա յոյսերը ի դերև հանողը։ Այս էլ բաւ չէր ինձ, իմ աչքիս առաջ խեղդուեցաւ սիրասուն Նշանածս, մինչ ես լալիս էի դիակին վերայ, Քէրիմ-Խան պղծեց նորա յիշատակը... ինձ կրօնափոխութիւն առաջարկեց... մտադրեցի ընդունիլ առ երեսս, անգթօրէն վրէժ լուծել և արշաւանքի ընապատճառից և զօրավարներից։ Ես տարօրինակ մարդ եմ, վայրկենական խորհրդածութեամբ որոշում եմ անելիքս։ Այդ ամենը կատարեցի։ Մեռան խաները, մեռան արքայազունք, մեռան հարեմի հայուհիները որովհետև՝ իմ խիղճս չէ ներում ազգիս աղջիկները քո լկանաց մատնուած տեսնել,

[illegible] պիտի մեռ-
նիմ [illegible] պիտի կատորեն [illegible] որոնելու... պի-
տի [illegible] թեկնածուներ, միմ-
կանց դէմ [illegible] պիտի զինեմ, իսկ արտաքին թշնա-
միս, Ցածրիկը պիտի արշաւէ Պարսկաստան...
Այն ամենը պիտի լինին ի փառս Նազենիկի անշունչ գերեզմանին, ի վրէժ Հայրենեացս և ի Նախատինքս քո...

Թագաւորը այնչափ ուժասպառ, կենսանուաղ, խօսելու անկարող էր՝ որ խորին զայրոյթը մահասարսուռ սրտին և աչքին մէջ մարաւ Խան-Միրանի խօսած ժամանակ, որի խօսքը թնդանօթի ռումբի ուժգնութեամբ կարծես դիպչում էին լսողութեան թմբկամաշկին։ Նա իւր բոլոր կարողութիւնն ամփոփելով վերջին մի ճիգ թափելով աւելի քըրթմնջեց քան խօսեց.

—Խա՛ն... դո՛ւ...

—Այո՛, ես...

—Ինչո՞ւ...

—Չը հասկացար, Թահմազ, աւրեմն կրկնեմ։ Գարեգին իւր սիրական աղջկայ անշունչ մարմնին առաջ երդուեց ապրել և լուծել վրէժը ահռելի ոճով։ Թահմա՛զ, դու զրկեցիր ինձ իմ սիրելիներից, փոխադարձը արի ես... Թահմա՛զ,

են թունաւորելով ջնջեցի Քիրմանի-Քէրիմ խանի ընտանիքը, քո բոլոր սիրելիները, ես թունաւորեցի Ֆիտոշին և քեզ... Հինգ րոպէ յետոյ էլ չը պիտի տեսնես աշխարհի արևը... Թահմա՛զ, ես իմ վրէժը լուծեցի, մնում է Հայոց-Հայրենեաց վրէժը, այն ևս պիտի լուծեմ, երդւում եմ և քո ցեղը ջնջել՝ եթէ կարողանամ, ինչպէս որ դու ջնջեցիր Արծրունիներին, երդւում եմ Պարսկաստան ողբերի եղերավայր դարձնել, ինչպէս որ դու դարձրիր Հայաստանը... Արդ՝ մեռիր, հրէշ դո՛ւ, մեռի՛ր միայն այդպէս գունատելով, առանց խօսել կարենալու, առանց գաղտնիք յայտնելու, որպէս մեռան քո սիրական արքայազունքը, գազանատիպ վէզիրները... Ո՜հ, Թահմազ, դեռ վրիժու ծարաւը արեան վտակներով չը կարողացայ մարել... լալիս եմ, Թահմա՛զ, տակաւին լալիս եմ իմ Նազենիկի վերայ... ուխտապահութեամբ ամուրի մնացի նորա սուրբ յիշատակով գրաւուած... Ի՜նչ լաւ բան, դողդողում են արքայի շրթները, կարկամում են ձեռները, հոգին ջլատուելով պիտի չքանայ յաւիտեան մի մոխրակոյտի վերածելով անսասան աշխարհակալ հրէշը... Քե՛զ, որ բովանդակ Հայի անէծքին մէջ պիտի թաղուիս, քե՛զ, որ աշխարհի, իմ ողբացեալ, այրի հայրենեաց աւերար-

կու մարմնացած ոգին էիր, թքնում եմ բոլոր կատաղութեամբ...

Խան-Միրան անհուն կատաղութեամբ՝ ընդոստ վեր թռաւ նստած տեղից, թքեց թագաւորի ճակատին։

Կարծեմ չը տեսաւ այս մեծ նախատինքը որքայից արեգակնափայլ արքայն, ջղասարսուռով պրկուած, գլուխը թաղեց ծիրանիների մէջ, հանգչեցաւ զարհուրելի թոյնի տարօրինակ ներգործութիւնից։

—Ընդունիր և այս, պաշտեցեալդ իմ Նազենիկ,—մրմռաց Խանը և խորին սառնութեամբ հեռացաւ սենեակի միւս անկիւնը՝ ուր մի ոսկեզօծ, գրուագեալ գեղեցիկ պարսիկ ոճով գրասեղան էր գրուած, վեր առաւ թուղթ ու գրիչ, սկսեց գրել, մի ինչ որ հրովարտակ, ապա զգուշութեամբ առնելով թագաւորի կնիքը, կնքեց, ապա գիրը և կնիքը դրեց բազմոցին տակ, ուր նստած էր Թահմազ-Կուլիի ուրուականը և դուրս ելաւ դահլիճից ինքզինք վրդոված, զարհուրած ներկայանալով պալատականներին, այնպէս որ տեսնողը անկասկած կարդում էր նորա դէմքի վերայ խորին վշտերի էջերը...

